1916 № 27.—Յուլիսի 3 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաքաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Վերջին տեղեկութիւնները և թիւրք զօրքի առաջխաղացումը հաստատում են, որ թշնամին աշխատում էր մեծ ույժեր կենտրոնացնել Կովկասեան ճակատի վրայ և յարձակումներ սկսել։ Խալիլ-փաշայի զօրաբաժինը Միջագետքում արդէն իր գործողութիւնները սկսել էր, երբ գեն. Բրիւսիլովի յաղթանակները արևմտեան ճակատում նկան տակն ու վրայ անելու թրքական ծրագիրները։ Թշնամու մեծ պատրաստութիւնները չը կարողացան լրանալ, գերմանացիների պարտութիւնները սկսեցին յուսահատութիւն պատճառել, և թիւրքերը ձեռնարկեցին կարուկ հարուածների գործողութիւններ՝ Երզնկայի ու Տրապիզոնի շրջաններում։ Ծովամերձ շրջաններում Հաջի-Համդի բէյն էր, որ փորձեց առաջ խաղալ։ Սակայն այդ բոլոր շարժումները անպտուղ անցան և ստիպողաբար դադարեցին մեր զօրքերի բուռն դիմադրութեան առաջ։ Յունիսի 29-ին ռուս զօրքը առաջ խաղալով գրաւեց նորից թշնամու մի շարք ամրացրած դիրքերը, իսկ Երզրումից դէպի արևմուտք՝ նա շպրտելով թուրքերին, խլեց նրանց ձեռքից Մամախաթունը։ Թշնամին նա քաշուելիս հրդեհել է քաղաքը։ Ձեռք են առնուել միջոցներ՝ կրակը դադարեցնելու համար։

Ծովի վրայ թշնամին իր ռումբերը վատնում է անպաշտպան ափերը, փոխադրանաւերը հարուածելով, իսկ գերմանական սուզանաւը, երկրորդ անգամ լինելով, վայրենաբար, առանց նոյն իսկ նախազգուշացնելու, պայթեցնում է հիւանդանոցային «Վպէրեօդ» շոգենաւը Սև ծովում։

Պարսկաստանում թէև գերմանացիներն ու թիւրքերը ճգնում են տեղական լեռնային ցեղերին նորից գրգռել մեր դէմ և նորից տակն ու վրայ անել երկիրը, սակայն Պարսից կառավարութիւնը խիստ միջոցներ է ձեռք առել և նոր գնացող Սպահանի կուսակալ Զիլլի-Սուլթանին երևի պիտի յաջողուի խաղաղութիւնը պահպանել, մտքերը հանդստացնել և հակառուսական պրոպագանդայի ազդեցութիւնը ի դերև հանել։

Յունիսի 19-ից մինչև 25-ը այս ճակատի վրայ բռնուած գերիների թիւն է 107 սպայ, 1684 զինուոր։ Խլուած են 3 թնդանօթ, 10 գնդացիր և 4 ռմբաձիգ։ Նա քաշուելիս թիւրքերը թողել են բազմաթիւ զէնք և ռազմամթերք։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Յունաստանում արդէն կատարեալ զօրացրիւ է տեղի ունենում և յոյների տրամադրութիւնը հակում է դէպի դաշնակից պետութիւնները։ Պարլամենտի նոր ընտրուող բոլոր պատգամաւորները, ինչպէս հաղորդում են թերթերը, անկեղծօրէն հակուած են դէպի բարեկամական վերաբերմունքը դաշնակից պետութիւնների օգտին։

Դաշնակիցները, որ մինչև այժմ ույժեր էին կուտակում Սա-

*լոնիկի կողմերը, ըստ երեւոյթին արդէն սկսել են յարձակումները և ընդհանուր կռիւը կսկսուի յուլիսի կէսերից ոչ-ուշ։ Թնդանօթամարտը Վարդարի աջ ափին շարունակւում է։*

### *ԱՒՍՏՐՈ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ*

*Վերջին օրերս ռազմական գլխաւոր գործողութիւնները այս ճակատում տեղի են ունենում Վոլինսկիյ մասում, «Ստոխոդի» շրջանում։ Գերմանացոց զօրքի այդ կռիւները հաւանականօրէն մղւում են՝ մեր յառաջխաղացման դէմ առնելու նպատակով։ Եւ յիրաւի մեր զօրքի յարձակումները ետ են մղում գերմանացիներին այդ ուղղութեամբ ու հետզհետէ սարսափի մէջ ձգում թշնամուն։ Գերմանացոց թերթերի տոնը արդէն սկսել է փոխուել, մանաւանդ երբ իրենց արեւմտեան ճակատներումն էլ սկսել են անյաջողութիւններ ունենալ։*

*Մինչև այժմ, այն է՝ մայիսի 22-ից մինչև 27-ը զօրավար Բրուսիլովի բանակը գերի է առել աւստրո-գերման զօրքից՝ 5,620 սպայ, 266,000 զինուոր, 312 թնդանօթ և 866 գնդացիր։ Եթէ հաշուենք պատերազմի դաշտում ընկածների թիւն էլ, ռուսաց արշաւանքները թշնամու շարքերից ու կռուի դաշտից ոչնչացրել են մօտ կէս միլիոն մարդիկ: Այս մի այնպիսի խոշոր կորուստ է, որ իզուր չեն վրդովումները Աւստրիայում և Գերմանիայում, մանաւանդ որ ծովափակն (բլոկադ) էլ միւս կողմից սովի է մատնել կեդրոնական պետութիւնների ազգաբնակութեանը։*

*Եւ յիրաւի խոշոր անկարգութիւններ ու կանոնաւոր ապստամբութիւններ են ծագել ամբողջ Բաւարիայում և Բեռլինում։ Միւնխէնը, Հանովէրը շարժման մէջ են, տասնեակ հազարաւոր կանայք՝ ապստամբութեան են դրդում գերման ժողովրդին, իսկ Բեռլինում իբր թէ սոցիալիստները յայտարարած լինելով ընդհանուր գործադուլ, գոցել են բոլոր գործարանները և բանուորները սկսել են պատնէշներ կառուցանել։ Զօրքը և ոստիկանութիւնը իբր թէ անզօր են գտնւում կարգը վերականգնելու։ Շարժումը տարածւում է նաև դէպի Լայպցիգ, Համբուրգ, Բրէմէն և իբր թէ շատ տեղերում արդէն քանդել են երկաթուղու գծերը։*

*Աւելի լաւ դրութեան չեն գերմանացիների գործերը ֆրանսական և անգլիական ճակատներում։ Անգլիացոց զօրքերը, տասնօրեայ անընդհատ կռիւներից յետոյ՝ իրար ետևից գրաւել են թշնամու բռնած ճակատից մինչև 14,000 եարդ տեղ։ Խլուած են թնդանօթներ և աւելի քան 7500 գերի։ Ֆրանսական ճակատի ընդհանուր յարձակման սկզբնաւորութիւնն է տեղի ունենում։ Զօրավար Ժոֆֆրը պատրաստում է մի ահաւոր և կտրական հարուած։ Մինչև այժմ դեռ թնդանօթամարտ է, ու տեղի են ունենում համապատասխան շարժումներ։ Այս սկզբնաւորութեան ընթացքումն իսկ ֆրանսացիների յաջող շարժումները գրաւել են 23 գիւղ, 104 թնդանօթ, գերել են մօտ 20,000 զինուոր։*

### *ԱՐԱԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ*

*Արաբները հետզհետէ կազմակերպւում են հիմնաւորապէս բաժանուելու քայքայուող Օսմանեան պետութիւնից։ Բուխարէստից լուր է տարածուած, որ «Երիտասարդ թիւրքերի» կառավարութիւնը փորձել է մի վերջին ճիգ եւս՝ արաբներին զսպելու համար իբր թէ։ Նա հեռուից հեռու պաշտօնանկ է արել Մեկկայի Շէրիֆին և Կ. Պոլսում Մեկկայի նոր շէրիֆ է հռչակել մի «երիտասարդ թիւրքի», Ալի-Հայդարին, տալով սրան և «փաշա» տիտղոսը։ Այդ հակաթոռ շէրիֆին Պոլսումն իսկ պահպանում են ոստիկաններով ու զօրքով, որ չը լինի թէ «արաբները փորձեն նրան սպանել տալ»։*

## Ներքին տեսութիւն

*Յունիսի 20-ին անակնկալ Բարձրագոյն հրամանով դադարեցին Պետական Դումայի նիստերը նոյեմբերին վերաբացուելու համար։*

—

*Տուապսէի և Սոչու ռմբակոծման մասին թերթերը հաղորդում են հետևեալ մանրամանութիւնը. «Գէօբէն» և «Բրէսլաու» ռմբակոծում էին մանր թնդանօթներից և շատ հեռուից։ Ամեն մի ռազմանաւ արձակեց մօտ 100 ռումբ։ Մի քանիսն ընկան Տուապսէ և չնչին վնաս պատճառեցին։ Վիրաւորուել են մի քանի հոգի։*

* * *

*Վանայ լճի բերքերից տառեխի որսորդութեան գործը ուսումնասիրելու համար, ինչպէս հաղորդում են թերթերը, կազմուած է ծրագիր և Վան է ուղարկւում Անդրկովկասի ձկնորսարանների կառավարիչ Նեւրայեւը՝ հետազօտիչ մի խմբով։*

—

### *ՇԱՒՇԷԹՑԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԸ և ՕՔՐՈՊԱԿԵՐՏԻ ՆՈՐ ԱՂԷՏԸ*

*(Լրջիկ լիազօրի օրագրից)*

*Արտասահմանումն եմ։ 1916 թուականի յունուարի 25-ի բուք ու բորանին նախնական աշխատանքներս աւարտած դուրս եկայ ընկերակցութեամբ Մինասեանի՝ այցելելու փախստականներին իրանց բնակարանում։*

*Այցելում ենք գաղթականների համարեա բոլոր տները։ Գ. Մինասեանի տեղեկութիւնները լրացնում է Շաւշէթցի—Օքրոպակերտ գիւղի ուսուցիչ պ. Պետրոս Յարութիւնեանը։ Իբրև իրազեկ անձ ամբողջ դրամային՝ տալիս է մանրամասներ մեր այցելած իւրաքանչիւր ընտանիքի անցեալ բարեկեցիկ վիճակի անուշ օրերը, կոտորածի ժամանակ հասած զուլումի և յետոյ ստեղծուած թշուառութեան։ Հազարից աւելի Շատախեցի և Տանձոտցի գաղթականներ ապաստանեցին այդ խարխուլ աւերակների մէջ և սրտատրոփ սպասում էին Զինուոր. Ատեանի դատավճռին այն ոճրագործների վերաբերմամբ, որոնք բանտարկուած էին մի քանի քայլ միայն հեռու իրենց զոհերից։*

*Շաւշէթ գաւառը տարածուած է Արդահանի հիւսիս-արեւմտեան կողմը։ Հայ ազգաբնակութիւնը տեղաւորուած է եղել միայն 4 գիւղում, որոնք շրջապատուած են եղել 34 հազար մահմեդական թիւրք ու լազ ցեղերով։ Այդ նամարդ հարեւանները, որոնց անուն-անուն ճանաչում են զոհերը—հայ գաղթականները, ռուս զօրքի Օլթուց նահանջելու ժամանակ կազմակերպւում են չետաներ և 1914 թ-ի նոյեմբեր 12-ից մինչև ապրիլ 10-ը լցւում են Շաւշէթի այդ 4 հայ գիւղերը և 5 ամիս շարունակ վայելելով հայ գիւղացու արիւն-քրտինքով կազմուած տնտեսութիւնը, առեւանգում են հայ կանանց և աղջիկներին, ջոկում են գեղեցիկներին, թալանի հետ տեղափոխում իրանց գիւղերը և ապա սարքում սոսկալի կոտորած։*

*1). Օքրոպակերտ գիւղում սպանում են 33 տղամարդ, 2 կին, հրապարակով լլկում 3 կոյս.*

*2). Սաթլէռաբաթում սպանում են 260 տղամարդ, 4 կին, լլկում և առեւանգում 12 աղջիկ։*

*3). Մամալէյլիսում—սպանում են 14 տղամարդ և գերում 2 աղջիկ։*

*4). Ազատուել են միայն Փղիկորցիները շնորհիւ իրանց բարի հարեւանների—աղ ու հաց չմոռացող խմերխեցիների։*

*Այդ չորս գիւղերում հայեր եղել են 258 տուն։*

*Երբ գարունը բացուեց, գեղեցիկ Շաւշէթը նորից դէպի իրան գրաւեց իւր թափառական որդիկներին։ Շաւշէթցի միւս գաղթականների նման Օքրոպակերտցի փախստականներն էլ քա-*

չերը բարձած՝ լի յոյսերով դէպի իրանց կարօտցած բնագաւառը դարձան։

Մրմուռը սրտերին նոքա ձորերից, դաշտերից, փլատակների միջից իրանց փէշերով հաւաքեցին կոտորածի զոհերի—իրանց պարախտ սիրելիների անթաղ ոսկորները, ամփոփեցին հայրենի հանգստարանում։ Վերաշինել սկսեցին իրանց հայրենական օջախը, համախմբուեցին նրա շուրջը և անձնատուր եղան հալալ աշխատանքի։ Սակայն դեռ հին վէրքը տակաւին չ'բուժուած՝ բացուեց նորը։ Արդահանից քշուած հեռագիրը գուժեց Շաւշէթի նոր աղէտը։ Օքրոպակերտը ամբողջովին հրդեհուել է. հայ գիւղացիները մերկ և քաղցած թափուած են մոխրակոյտի շուրջը՝ սպառնացող մահուան ուրուականների առաջ։ Շաւշէթի հայ հարևանները իրանց խիստ չքաւորութեան պատճառով նոյն իսկ առաջին օգնութիւնը հասցնել չպիտի կարողանան. օտարազգի հարևաններից և ոչ մի յոյս։

Ա. Առովեան

29 յունիսի 1916 թ.
Կարս։

---

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ՊՈՍՏԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ՕՐԷՆՔ

Ներքին գործոց նախարարի կարգադրութեամբ, նամակատան կանոնադրութիւնների 80.81 և 536 յօդուածները առժամանակ ենթարկւում են հետևեալ փոփոխութիւնների.—1) Արգելւում է յանձնել և պոստում ընդունել այն բոլոր նամակ-թղթակցութիւններն առ հասարակ, որոնք ուղարկւում են «ցպահանջ» (до востребованія) և չեն կրում ստացողի անունը, հօր անունը և ազգանունը։

2) Արգելւում է ընդունելը և յանձնելը այն ամեն տեսակի թղթակցութիւնները պոստերում, որոնք «յանձնելի» են այնպիսի անձերի, որոնց անունը նշանակուած լինի տառերով, թուերով, պայմանական որևէ բառով (օրինակ՝ «վաճառականին», «№ թըղթադրամ ներկայացնողին) և այլն։

3) Ցպահանջ ուղարկուած բոլոր թղթակցութիւնները, որոնց վրայ նշանակուած են հասցէները կատարեալ կերպով (անուն և ազգանուն) կը տրուեն տէրերին այն ժամանակ միայն, երբ ստացողները ներկայացնեն կամ անցագիր և կամ փոխարինող ոևէ վկայաթուղթ։ 4) Վերոյիշեալ ձևով, այն է՝ շինծու կամ պայմանական անուններով ուղարկուած ամեն թղթակցութիւն չի յանձնուի, այլ կ'ոչնչացուի։

---

## ԷՐԶՐՈՒՄԻՑ—ՎԱՆ

Անցեալ տարուայ կոտորածներից առաջ Տաճկահայաստանի Արևելեան նահանգները տեսնող մէկի համար այդ նահանգների ներկայ դրութիւնը ներկայացնում է մի ողբալի տեսարան։ Գիւղերի մեծ մասը բոլորովին աւերակ է, մի քանիսն էլ կիսաւեր, իսկ ամենից աւելի տիրապետող գիծն է գիւղերի ամայացումը՝ շատ չնչին բացառութեամբ։ Բայց պէտք է նաև ասել, որ միմիայն [illegible] գիւղերը չեն ամայացած ու աւերակ, նոյնը և գուցէ աւելի վատ [illegible] մէջ են թիւրքական և քրդական գիւղերը բացի մի [illegible]ններից։ Սարիղամիշի ուղղութեամբ երբ ես Թիւրքիա [illegible] Քէօթակ և Աղար, ակներև եղաւ ինձ թիւրք հարկա[illegible]ուրք կայմակամի, վերջապէս թիւրք վալու անյայտացումը։ Նրանք բոլորը անհետացել են քաղաքակրթութեան սրարշաւ հո[illegible]անքին առջև և ապաստանել են այն երանելի երկրամասերը, ուր նրանք կարող են «էակիսի կիպի» նախկին ձևով կողոպտել անպաշտպան ժողովուրդը։ Նրանց փոխարէն ես տեսայ, երբ յառաջանում էի Արաքսի ափերով, Ռուս ճարտարագէտների և անհատների երկար շարանը, որոնք պատառում էին լեռների կողքերը և ճեղքում ժայռեր

Ամեն մի 20-30 վերստի վրայ հաստատուած Քաղաքների Միութեան սննդատու կայարանները առանձնապէս, իսկ Կարմիր Խաչի և Զեմստվոյի Միութեան ապաստանարաններն ընդհանրապէս օրհնութեան աղբիւրներ են անապատացած այդ երկրին մէջ, ուր ամեն ուղևոր՝ թէ փախստական և թէ պատուաւոր հիւր գտնում է ջերմ ու սիրալիր հիւրընկալութիւն։

Ես վերջին անգամ Էրզրում տեսած էի 1911-ին, երբ հայկական կեանքը իր ամեն երևոյթներով եռում և յորդում էր այդ քաղաքին մէջ։ Իսկ այժմ չկայ այդ տարրը, ուստի և աչքի է ընկնում միջոցների մէջ իրենց կեանքը քաշ տուող պառաւած թիւրք մարդիկ և կինարմատներ։ Բայց արդէն քաղաքը սկսել է ցոյց տալ կենդանութեան նշաններ։ Օրից օր աւելանում է հայերի թիւը թէ քաղաքի և թէ շրջակայ գիւղերի մէջ. և ուրիշ չափերով առաջ են տարւում երկրագործական աշխատանքները։

Դրութիւնը բոլորովին տարբեր կարելի է համարել Վանում։ Այստեղ թէև քաղաքի լաւագոյն մասը հրդեհուած է, բայց թէ քաղաքի և թէ գաւառների մէջ մի ահաւոր մղձաւանջից վերադարձող ժողովուրդը նոր յոյսերով և նոր եռանդով կպել է իր հայրենիքի և տնտեսական վերականգման գործին։ Հայ աշխատող ժողովրդի այս ինքնաբաշխ ոգևորութեան հանդէպ անհնար է չ'անել մի նկատողութիւն Թիֆլիսում գործող հայ մարմինների դանդաղ և գրեթէ խափանարար ընթացքի մասին։

Ամիսներից ի վեր ծրագիրներ են պատրաստւում հայ գիւղացուն հասցնելու եզ, գութան և արօր, և երբ գրեթէ անցնելու վրայ է աշնանացանի համար հողերը հերկելու ժամանակը, դեռ չեն հասել ամիսներից ի վեր ի լուր աշխարհի հռչակուած գութանները և այլ երկրագործական գործիքները։ Ես համոզուած եմ, որ որոշ սիստեմով և խղճմտութեամբ կարելի է դարմանել այդ թերութիւնը «միշտ ուշ մնացած լինելու»։

- Մի քանի տողերով ի հարկէ չի կարելի պատկերացնել մի ամբողջ ժողովրդի և երկրի դրութիւնը այս եղական սարսափի վաղորդայնին։ Երկրի մէջ այժմ ապրող ժողովրդի նիւթական պայմաններին ծանօթանալուց յետոյ՝ տիրողը չի կարող չարտայայտել իր խորին գոհունակութիւնը և ուրախութիւնը հանդէպ հայ ժողովրդի հոգեկան յուսալիր տրամադրութեան։ Հակառակ պատերազմի արհաւիրքների բացասական երևոյթներին, երկրի մէկ ծայրից միւսը ամեն հայի կրծքի տակ բաբախում է մի ուժեղ և անընկճելի ոգի—վերաշինելու իր տունը և տնտեսութիւնը առաջուանից աւելի լաւ հիմունքներով և անցեալ սարսափելի տարին համարել իր դարաւոր պատմութեան ամենասև էջերից վերջինը, որին յաջորդելու է նորածագ արշալոյսը։

Արշակ Սաֆրաստեան

---

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՊԵՏՐՈԳՐԱԴԻ ԽՈՒՄԲԸ *).

Անցած աշնանը Պետրոգրադում ձեռնարկուեց այս Խմբի (Отрядъ) կազմութիւնը։ Պետական Դումայի անդամ Մ. Պապաջանեանի և Պետրոգրադի Հայոց Բիւրոյի նախագահ Ա. Սարիբէկեանի կողմից միջնորդութիւն-դիմում եղաւ Նորին Կայսերական Բարձրութիւն Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի յանձնաժողովի նախագահ Պետական Խորհրդարանի անդամ Ա. Բ. Նէյդգարտին՝ անհրաժեշտ միջոցները հայթայթելու համար։ Մեծ Իշ-

*) Մեր ընթերցողներին յայտնի է, որ պ. Սիրական Տիգրանեանը, որ Թիֆլիս է եկել Վանի և այլ շրջաններում բացուելիք արհեստանոցների համար գործիքներ գնելու, Պետրոգրադի հայ հասարակութեան լիազօրն է, և Պարսկաստանում բացել է սննդատու կայաններ ու բուժարաններ Սալմաստի շրջանում և Տաճկահայաստանում, Վանի նահանգում։ Ս. Տիգրանեանը 1914—15 թուականի ձմեռը նա կարգուել էր Ռուսաց զօրքի Տաճկաստանից գրաւուած արեւելեան շրջանի, այն է՝ Բայազիդի, Դիադինի և Ալաշկերտի քաղաքացիական գործերի լիազօր։

Խմբագրութիւնս դիմեց պ. Ս. Տիգրանեանին և ստացաւ տեղեկութիւն-

## Վիճակագրական տեղեկութիւններ Դիադինի շրջանի հայ գիւղացութեան անտեսութեան՝ հաւաքուած Բաղ. Աբոյեանի ձեռքով 1915 թ. մարտին.

| | Գիւղի անունը | Բնակիչների թիւը 1914 թ. Տղ. | Բնակիչների թիւը 1914 թ. Կին | Բնակիչների թիւը 1915 թ. Տղ. | Բնակիչների թիւը 1915 թ. Կին | Սպանուած քրդերի ձեռքով | Գաղթեան ժամանակ մեռած | Աշխատող ձեռք չունեցող ընտանիք | Գիւղի վարելահող [illegible] | Ցանելի հող | Բանջարանոց [illegible] | Ցանելի հող | [illegible] | [illegible] | [illegible] 1914 թ. | Սովորական գարնանացանը Ցորեն | Սովորական գարնանացանը Գարի | Սովորական գարնանացանը Կտաւհատ | Մտադրուած գարնանացանն 1915 թ. Ցորեն | Մտադրուած գարնանացանն 1915 թ. Գարի | Մտադրուած գարնանացանն 1915 թ. Կտաւհատ | [illegible] | [illegible] | Շէնքերի կրած վնասը |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Զուջան | 292 | 222 | 212 | 204 | 19 | 9 | 102 | 1452¹) | 848 | 381⁶) | 321 | 154 | 387 | 82½ | 271 | 140 | 23¾ | 325 | 124 | 13⅓ | 242 | 53 | 50 հիմնովին քանդուած, 154 դուռ տարուած. |
| 2 | Սէյդօ | 20 | 23 | 20 | 23 | — | — | 11 | միրիրա են²) | — | 70⁷) | 70 | — | 44 | — | 35 | 17 | 1 | 38 | 12 | | Այդրուած են ադայի անհրում | | |
| 3 | Ղումլի բուճաղ | 174 | 156 | 167 | 151 | 1 | 13 | 95 | 541³) | 346 | 325⁸) | 325 | 128 | 158½ | – | 139 | 76 | 9 | 186 | 58 | — | 150 | 18 | 18 հիմնովին քանդուած, 138 դուռ տարուած |
| 4 | Ղարաբաղար | 116 | 112 | 115 | 111 | — | 2 | 63 | 932⁴) | 792 | 463 | 463 | 120 | 241 | — | 173 | 130 | 11¼ | 214 | 91 | — | 110 | 12 | 12 հիմնովին քանդուած, 99 դուռ տարուած |
| 5 | Վանք | 153 | 135 | 144 | 125 | 1 | 18 | 65 | 683⁵) | 654 | 100⁹) | 100 | — | 202 | — | 167 | 60 | 4½ | 199 | 47 | — | 103 | 40 | 40 հիմնովին քանդուած, 140 դուռ տարուած |

¹) Զորս ընտանիք հողի սակաւութեան պատճառով ցանում են ուրիշի վարելահող։
²) Միրիրա-գիւղացիք հողատէր չեն. հողը պատկանում է Համզա աղային։
³) Երեք ընտանիք անհող է, իսկ երկուսը սակաւահող։
⁴) Երկու ընտանիք անհող է և վարձում է ուրիշներից, երկուսն էլ սակաւահող են, ցանում են ուրիշի հողը։
⁵) Ութ ընտանիք ցանում են նաև վանքի հողերը. երկուսը մշակ են բանեցնում։
⁶) Ինն ընտանիքի խոտը պակաս է, որ և գնում են ուրիշից։
⁷) Խոտհարքերը պատկանում են Համզա աղային, չորս ընտանիք անխոտ են և գնում են ուրիշից։
⁸) Զորս ընտանիքի խոտը սակաւ է, գնում են ուրիշից։
⁹) Զայիրը համայնական է, բաժանելիս մեծ ընտանիքն ստանում է 2 բաժին, իսկ փոքրը՝ 1։

| | Գիւղի լծկան. թիւը գաղթից առաջ Ձի | Գիւղի լծկան. թիւը գաղթից առաջ Եզ | Գիւղի լծկան. թիւը գաղթից առաջ Էշ | Գիւղի լծկան. թիւը 1915 թ. մարտին Ձի | Գիւղի լծկան. թիւը 1915 թ. մարտին Եզ | Գիւղի լծկան. թիւը 1915 թ. մարտին Էշ | Գիւղի կթան անասունների թիւը գաղթից առաջ Կով | Գիւղի կթան անասունների թիւը գաղթից առաջ Կամէշ | Գիւղի կթան անասունների թիւը գաղթից առաջ Մաքի | Գիւղի կթան անաս. թիւը 1915 թ. մարտին Կով | Գիւղի կթան անաս. թիւը 1915 թ. մարտին Կամէշ | Գիւղի կթան անաս. թիւը 1915 թ. մարտին Մաքի | Գիւղի կտաւհատի, հացահատիկի և խոտի քանակը գաղթ. առաջ ըստ ստմարի Ցորեն | Գարի | Կտաւհատ | Խոտ (կապ) | Գիւղի հացահատիկի, կտաւհատի և խոտի քանակը 1915 թ. մարտին Ցորեն | Գարի | Կտաւհատ | Խոտ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 57 | 182 | 90 | 49 | 108 | 43 | 177 | 59 | 1439 | 66 | 23 | 447 | 2467 | 576 | 99½ | 636 | 147 | 49 | 26½ | — |
| 2 | 7 | 19 | 2 | 3 | 8 | — | 26 | 3 | 62 | 14 | — | 5 | 205 | 30 | - | 59 | 9 | — | - | — |
| 3 | 14 | 157 | 56 | 5 | 22 | 11 | 146 | 25 | 1167 | 10 | 2 | — | 1810 | 364 | 41 | 469 | 17½ | 2 | 4 | — |
| 4 | 30 | 69 | 58 | 16 | 35 | 12 | 101 | 38 | 496 | 29 | - | 204 | 1197 | 400 | 53 | 483 | 105 | 11 | 34 | — |
| 5 | 25 | 147 | 32 | 26 | 64 | 14 | 138 | 25 | 343 | 49 | 12 | 67 | 1226 | 131 | 31 | 207 | 158 | 9 | 7 | — |

| | Գիւղի փոխադր. միջոցները և երկրագործ. գործիքները գաղթից առաջ Սայլ | Արաբա | Ձոմ | Քոլ | Կոթին | Կալ | Սղոցի | Գութան | Գիւղի փոխադր. միջոցների և երկրագործական գործիքների քանակը 1915 թ. Սայլ | Արաբա | Ձոմ | Քոլ | Կոթին | Մզեղոր | Գութան | Կալ | Տնտեսութիւնը վերականգնելու անհրաժեշտ անասունների թիւը առնուազն Կով | Եզ | Էշ | Մաքի |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 31 | 11 | 74 | 123 | 75 | 78 | 3 | 18 | 13 | 2 | 13 | 13 | 12 | 2 | 2 | 7 | 107 | 55 | 25 | 225 |
| 2 | 2 | 2 | 9 | 15 | 9 | 10 | 2 | 2 | — | 1 | 2 | — | — | — | — | | 13 | 12 | 4 | — |
| 3 | 19 | 11 | 55 | 102 | 60 | 59 | 2 | 18 | 13 | — | — | 2 | — | 1 | 1 | — | 69 | 81 | 16 | 215 |
| 4 | 16 | 1 | 42 | 63 | 32 | 46 | 1 | 13 | 1 | — | 9 | 5 | 1 | — | — | 6 | 58 | 35 | 25 | 45 |
| 5 | 14 | -- | 42 | 115 | 40 | 46 | — | 9 | 2 | — | 6 | 6 | 3 | — | — | 3 | 54 | 61 | 2 | 75 |

Կազմեց Ս. Խաչատրեան

(Շարունակութիւնը հետեւեալ համարում)

Սկայ

## ԹՌՈՒՑԻԿ ԱԿՆԱՐԿ ՇԻՐԱԿԻ ԳԱՒԱՌԻՑ

II

*Գարապութիւնը այս գիւղացու տունը քանդում է. նա աշխատում է տարուայ մէջ միայն երկու ամիս։ Մնացած ժամանակը քնում է, ուտում, խաղում, հայհոյում և աղօթում...*

*Մտնում ես գիւղը. մարդիկ տասնեակներով վխտում են փողոցներում—բոլորն էլ պարապ, ամենքն էլ անգործ։ Այնքան պարապ, որ նրան հետաքրքրում է ոչ թէ միայն նորեկը որտեղից է գալիս, ո՞ւր է գնում և ո՞րտեղացի է, այլ և ինչպէս է պաշտպանւում գիւղի ահագին գամփռներից...*

*Իմ կարծիքով այս անգործութեան գլխաւոր պատճառն է բախտին հաւատալը. «Է՜, ըշտէ, ղսմէթ չէր ինձի»։ Աշխատի, չաշխատի, նրա գործը կը յաջողի, եթէ «ղսմէթ» լինի. ահա նրա համոզմունքը, ահա ցաւալի երեւոյթը։ Եւ այս մեծ չարիք է գիւղացու համար։ «Ղսմէթի» բաղդի հետ կապում է նա ճակատագրի, Նախախնամութեան գաղափար և ամեն ինչ նրան թողնում...*

*Անգրագէտ, գրին ու գրքին անծանօթ, նա գիրք է պաշտում—Նարեկ, Սաղմոս, Յայսմաւուրք եայլն։*

*Պատկերապաշտութիւն տեսել ու լսել էի, իսկ գրապաշտութիւն ոչ։ Հորիզոնի էջերում յիշել եմ արդէն գրքի պաշտամունքի մասին. էլ չեմ ուզում կրկնել։ Միայն խորին ցաւակցութեամբ կասեմ Օրացոյցի, Յայսմաւուրքի ժողովուրդ։*

*Բանդեցէք բոլոր տները—ոչ մի ազգային գիրք, ոչ մի վիպասանութիւն։ Ոչ թէ Րաֆֆի, Ահարոնեան, Թումանեան, Աղայեան, այլ նոյնիսկ Աբովեան, Պռօշեան, Պատկանեան, Ծերենց և ոչ իսկ Եղիշէ։ *)։ Սա նոյն Տաճկաստանի ժողովուրդն է, շատ քիչ կերպարանափոխուած։ Նոյն աւանդութիւններով, նոյն սովորութիւններով ու ծէսերով։ Եւ հայկական չեն այս սովորութիւնները, այլ մեծ մասով տաճկական։ Մարդու կատաղութիւնն է գալիս, երբ տեսնում է, որ հայը սրբութեամբ պահպանում է իրենից կուլտուրապէս շատ ստոր մի տարրից ընդօրինակած սովորութիւնները, նրա առածները, նոյնիսկ լեզուի մէջ ամենահասարակ, ամենագործածական բառեր։*

*Ամբողջ աշխարհը տակն ու վրայ է եղել, իսկ սրանք անհաղորդ այս բոլորին։ Հինգ—վեց գիւղում պատահել եմ մի-մի օրինակ Հորիզոն, որի ընթերցողները երկու տասնեակից հաւանական ց դէնը չանցնեն։ Սրանք աւելի գերադասում են ժամագիրք կարդալ, որ չեն հասկանում, քան լրագիր։*

III

*Յիշենք մի քանի հարսանիքի սովորութիւններ։*

*1). «Բաշլըղ»ի սովորութիւնը։*

*Աղջիկ ուզելիս, տղայի տէրը պիտի տայ 50-ից 200 ռուբլի, որով աղջկայ ծնողները օժիտ են պատրաստում։ Այրի կնոջ բաշլըղը աւելի թանգ արժէ—100 ռուբլուց ոչ պակաս, մանաւանդ, եթէ նա գեղեցիկ է։*

*2). «Սաչու»—Փեսայի բարեկամները հարսանիքի վերջին ընծաներ են տալիս փեսային, երեւի ի տրիտուր երեք օրուայ ընթացքում իրենց կերած-խմածի։*

*3). «Եզու»—Տղի տէրը ղրկում է աղջկայ տունը զանազան ուտեստներ՝ իւղ, բրինձ, ոչխար, օղի եայլն։ Այս որոշւում է «քեասումի» օրը։*

*4). «Քեասում»—Որոշում են հարսանիքի օրը և «Եզու»ի համար բերելու իրերը։ Խնամիների մէջ յաճախ կռիւ, տուր ու դըմփոց է տեղի ունենում, ընծաների որակի կամ քանակի պատճառով։ Ամեն մի հարսանիքում բանեցնում են 5—6 պուդ օղի։ Մի բանիմաց գիւղացի հաշուեց, որ Ալեքսանդրապոլի գիւղացին օղու տուած փողով կարող է ծխական դպրոց պահել։*

*5). «Կարմրուկի»ի ծէսը—Եզը մորթում են, արիւնը սրսկում նրա պոչը և զանազան թալիսմաններ կարդում, որ փեսան ազատուի «կապուելուց», այսինքն անկարութիւնից «Impotentia». այս պոչը պահում են առանձին տեղ, որ ոչ ոք ձեռք չ՚տայ։*

*6). «Կարաս կոտրելը»—Պսակից յետոյ նորափեսան տան շէմքից անցնելիս, նորահարսի հետ թեւանցուկ ոտի հարուածով պիտի կոտրէ շէմքի առաջ դրած կարասը։ Վայ այն փեսային, որ չկարողացաւ կարասը կոտրել—նա իմպոտենտ է։ Այսպիսի մի դժբաղդ փեսայից հարսը փախել է... Այս սովորութիւնը գլխաւորապէս Ալաշկերտից եկածների մէջ գոյութիւն ունի։*

*Նորահարսը քօղ պիտի կրէ մօտ երկու տարի։*

*Մի քանի գիւղերում զուարճանալու համար զանազան «անակնկալներ» են սարքում խնամիների համար։ Ինձ պատմեցին իմիջի այլոց, թէ ինչպէս Շիրվանջուխ գիւղում նորահարսը իր ծանօթ աղջիկների հետ միասին փախցրել էր խնամու վերմակը և խեղճին թողել անյարմար կացութեան։*

*Բժիշկ Աւետիս Տէր Յովհաննիսեան*

---

**) Կարծում ենք, որ մեր թղթակիցը սխալւում է, գրի իսկական պաշտամունքի մտայնութիւնն է յետադայ սերունդի գրամոլեռանդութեան և այն էլ գլխաւորապէս հարեան ազգերի ազդեցութեան շնորհիւ. պատկերապաշտութիւնը կամ աւելի ճիշտ պատկերամոլութիւնը պատկերայարգութիւնից յետոյ է ծագել։ Մեր նոր վիպասանները եւ պակաս հետաքրքրութեամբ չեն կարդացւում և գրաւում հասարակ ժողովրդին, մանաւանդ պատմական ռոմանները.*

*Խմբ.*

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԾԱՆՈՒՑՈՒՄ

*«Համբաւաբեր»-ի 4, 6 և 21-րդ համարները սպառուած լինելով, խնդրում ենք ճիւղերից, որոնց մօտ գտնւում են այդ համարներից աւելորդներ, ուղարկեն խմբագրութեանս պատուիրած փաթէթներով։*

—

*Խնդրում ենք այն բաժանորդներից, որոնք բաժանորդագրուել են կէս տարով, վերանորոգեն իրենց բաժանորդագրութիւնը, այլապէս խմբագրութիւնս յուլիսի 1-ից կ՚դադարեցնի նրանց թերթի առաքումը։*

## ԱԶԱՏՈՒԱԾՆԵՐ

*Յայտնի է, որ կովկասեան գրեթէ ամեն ճակատի վրայ Ռուս բանակի և մեր քաջարի կամաւորների յառաջխաղացման՝ նաև «որոնող» խմբերի աշխատանքներով (որոնք միշտ էլ բանակին հետեւում են) ազատւում են, դուրս են բերւում հատ ու կենտ հայ երեխաները, կամ կիները, այն ժամանակ, երբ քիւրդերը կամ թիւրքերը գրոհի տակ խուճապի մատնուելով, թողնում ու փախչում են, միջոց չունենալով կոտորելու կամ իրենց հետ տանելու հայերին, որոնք մինչ այդ խլամացման կամ ծառայեցնելու մտադրութեամբ՝ նաև պահուած են լինում այս ու այն գիւղի քիւրդի կամ թիւրքի քմահաճոյքին մատնուած։*

*Այս տեսակ ազատուողների թիւը, օրըստօրէ բարձրանում է անչափ ուրախալի քանակով։*

*Այստեղ հարկ եմ տեսնում ցուցակը տալու այն ազատուած անձանց, որոնք Մուշի կամ Խնուսի շրջանների մէջ յարմարութիւն չունենալով ապրելու, մեր այդ գծերի վրայ գործողների ձեռամբ փոխադրուած են Ալաշկերտ՝ այնտեղից Կովկաս անցնելու մտադրութեամբ. սակայն մենք աշխատել ենք ամեն միջոցներով ու յարմարութիւններով թողնել նրանց Ղարաքիլիսէ կամ Ալաշկերտի հովտի մէջ՝ որքան կարելի է մօտ իրենց հայրենիքին...*

*Ազատուածների թիւը Ալաշկերտի մէջ այժմ հասնում է 1000-ի, որոնցից 300-ը որբեր են՝ տեղաւորուած Ալաշկերտի «105» որբանոցի մէջ և որոնց ցուցակը առանձին «Համբաւաբեր»-ի յա-*

մխուածով շուտով պիտի հրատարակուի։ Մնացեալ 700 հոգու, որոնք մինչև մարտ 24 ժամանել էին Ալաշկերտ, ցուցակն արդէն պարբերաբար յայտարարուել է։ Իսկ ստորև ես պիտի տամ այն նոր ազատուածների ցուցակը, որոնք մարտ 24-ից մինչև մայիս 14-ն են ժամանել ու տեղաւորուել Ալաշկերտի զանազան գիւղերի մէջ և որոնց ես հանդիպել եմ ու կարողացել տեղեկագրել։

### ԱԼԱՇԿԵՐՏ—ԽԱԶԼՈՒ ԳԻՒՂՈՒՄ

| Անուն-ազգանուն | Տարիք | Գաւառ | Գիւղ |
|---|---|---|---|
| 1 Շուշան Խաչատրեան | 35 | Բուլանըգ | Շերւանշեխ |
| 2 Յովսէփ Ամրոյեան | 9 | » | » |
| 3 Խումաշ Արեշատեան | 22 | Մուշ | Բոստաքանդ |
| 4 Սօսէ Աւէեան | 12 | » | » |
| 5 Տիգրան Մխիթարեան | 12 | » | » |
| 6 Սաչլու Մարտիրոսեան | 11 | Կոպ | Օղինչոր |
| 7 Ֆերխադ » | 12 | » | » |
| 8 Խողէգա » | 9 | » | » |
| 9 Ալգուզ Նազարեան | 24 | Բուլանըգ | Փրկաշէն |
| 10 Հոռոմ Գասպարեան | 32 | Մուշ | Բոստաքանդ |
| 11 Յակոբ Մուշեղեան | 12 | » | » |
| 12 Զլֆէ » | 8 | » | » |
| 13 Վարթիկ » | 7 | » | » |
| 14 Գրիգոր Կէնջօյեան | 16 | » | » |
| 15 Ֆինջօ » | 15 | » | » |
| 16 Արմենակ Խուրշուդեան | 10 | » | » |
| 17 Իֆօ Գասպարեան | 30 | » | » |
| 18 Զարդար Յարութիւնեան | 42 | » | » |
| 19 Ֆերիկ Դէորգեան | 6 | » | » |
| 20 Դալալ » | 10 | » | » |
| 21 Կոլօ Դաւթեան | 30 | Բուլանըգ | Փրկաշէն |
| 22 Բէրսօ Մուշեղեան | 5 | » | » |
| 23 Կոլվարդ Սարգսեան | 12 | » | » |
| 24 Սրմօ Վարդանեան | 8 | » | » |
| 25 Զարդար Գասպարեան | 12 | Կօպ | Մաշդլու |
| 26 Սերոբ Պաղդասարեան | 24 | Մուշ | Բոստաքանդ |
| 27 Լեոն Կարապետեան | 12 | » | » |
| 28 Ազատ Պօղոսեան | 11 | » | » |
| 29 Ղազար Անդրոյեան | 13 | » | » |
| 30 Ալմաստ » | 10 | » | » |
| 31 Գէորգ Աւետիսեան | 12 | » | Տրմետ |
| 32 Խորէն Ալոյեան | 10 | » | » |
| 33 Միհրան Նազարեան | 12 | Բիթլիս | Բիթլիս |

Կարին Ալաշկերտ-Զամուրլու

| | | | |
|---|---|---|---|
| 1 Սօսէ Կարապետեան | 9 | Մուշ | Բոստաքանդ |
| 2 Կիյմօ » | 12 | » | » |

Կարին Ալաշկերտ-Իրիցու գիւղ

| | | | |
|---|---|---|---|
| 1 Խորոտ Գրիգորեան | 40 | Կոպ | Համզաշեխ |
| 2 Միսակ Պետրոսեան | 14 | » | » |
| 3 Մարօ » | 9 | » | » |
| 4 Հայկօ » | 1 1/2 | » | » |

Վերջացնելով ցուցակը, և մանաւանդ նկատելով, որ հարիւրաւոր մարդիկ Կովկասէն դուրս գալով իրենց «եղսիր» (գերիներ) փնտռելու են գնում՝ թէկուզ հեռու, թէկուզ մինչև պատերազմի դաշտը, առանց որոշ իմանալու թէ ազատուած են արդեօք, և կամ թէ ուր կը գտնուեն,—թողունք անոնց ճանապարհին քաշած հազար ու մի տանջանքները—շատերը անոնցմէ (ինչպէս որ ես հանդիպած եմ), ամբողջ օրերով թափառելէ վերջ, ձեռնունայն են վերադառնում է, ուստի ես աւելորդ չեմ համարեր յիշեցնելու մեր բոլոր գծերի վրայ գործող ընկերներին, որ ամեն նոր ազատուողների ցուցակը անհրաժեշտ է պարբերաբար ուղարկել եթէ ոչ «Տեղեկատու Բիւրոյ»-ին, գէթ որև է թերթի խմբագրութեան, որոնք յայտարարելով մեծ ծառայութիւն մատուցած կը լինեն փախստականներին։

Պօղոս Հիւսեան

---

### † ԴՈԿՏՈՐ ՎԻԼՍՈՆ

Գեղեցիկ գործի վրայ, մարդկային ամենավսեմ շարժման մի վայրկեանին, զոհ անձնուիրական մարդասէր զգացմունքների՝ ընկաւ մի ծերունազարդ ամերիկացի եւս, որ տասնեակ տարիներից ի վեր Արևելքի տգիտութեան ու խաւարի մէջ չը յոգնեց աշխատելուց ու չը տրտնջաց իր վիճակից։ Դոկտոր Վիլսոնը մէկն է այն փառաւոր գործիչներից, որոնք թողնում են իրենց բարեկեցիկ կեանքը և գալիս են մեր աղէտների մէջ՝ մեր ազգակիցների տառապանքները ամոքելու։

Եւ զարմանալի էլ չէր, որ ամսիս 28-ի հոգեհանգստին շտապել էր յարգանքը մատուցանելու այդ մարդասէրի յիշատակին՝ Թիֆլիսի հայ մտաւորականութիւնը ամբողջ։

Դոկտոր Վիլսոնը գործում էր վերջերս Պարսկաստանի մեր սահմաններում, հազարաւոր տառապողների և փախստականների համար և այնտեղ էլ մեռաւ հերոսաբար։

Հայ տառապող ազգը իր բազմատանջ գլուխն է խոնարհում ամերիկացի մարդասէրի յիշատակի առաջ և իր ծանր վշտերին աւելացնում է Վիլսոնի ցաւալի մահն եւս։

—

Երեքշաբթի օրը կատարուեց Վիլսոնի հոգեհանգիստը, ներկայութեամբ Թիֆլիսի և Ատրպատականի առաջնորդների, գեներալներ՝ Թամամշեանի և Շահ-Պարոնեանի, ամերիկական հիւպատոսի, Վեր. Մաքկալումի և իւր ընկերների և բոլոր հայ մտաւորականների, թերթերի, ընկերութիւնների և կազմակերպութիւնների ներկայացուցիչների։ Ատրպատականի առաջնորդը խօսեց ոգեւորուած մի գեղեցիկ դամբանական, որով գովաբանեց առ հասարակ բոլոր ամերիկացի միսիոնարների գործունէութիւնը այս վերջին աղէտների ընթացքում և յատկապէս դրուատեց ծերունի Դր. Վիլսոնի բազմամեայ արդիւնաւոր կեանքն ու անձնուիրութիւնը։ Հոգեհանգստից յետոյ ներկայ եղողները իրենց վշտակցութիւնը յայտնեցին ամերիկացի հիւրերին և հիւպատոսին։

---

### ԳԱՒԱՌ

ԱԽԱԼՔԱԼԱՔ, 14-ն յունիսի.—Ամսիս 7-ին ճամբայ ընկան՝ տարիուկէսից աւելի քաղաքումս բնակուող Տանձոտի գաղթականները։ Նրանց թիւը կոտորածից առաջ եղել է 1,200 հոգի, այժմ հազիւ 450 է մնացել. 54 հոգի միայն քաղաքում մեռան։ Բացի մօտ 160 մանուկներից և պատանիներից, մնացածները կին ու աղջիկ են. երիտասարդների և հասակաւոր մարդկանց թիւը 7 է։ Գաղթական տանձոտցիներին խոր վիշտ է պատճառել հետևեալ դէպքը.—Ախալքալակցի լուսանկարիչ Թ. Եուրտանեանը գաղթականներին օգնելու և ժամանակաւորապէս պահելու անուան տակ՝ վերցնում է 3 տարեկան մի սիրուն երեխայ խնամելու. վերադարձի օրերին երեխայի ազգականները գնում են վերցնելու, տիկին Եուրտանեանը չի կամենում վերադարձնել երեխային. ազգականները տղային բռնի վերցնում են. Եուրտանեանը նորից յաջողում է բռնի վերցնել տղային և անյայտանալ։ Երեխայի ազգականները ստիպուած մեկնեցին առանց երեխային։ Երեխայի մամն ասում էր լալագին՝ երկու տան ճրագ է, մարեցաւ...։

Գաղթականների վերադարձը շատ լաւ կազմակերպուած էր։ Դրա համար յատկացուած 13,000 ռուբլով վարձուած էր 100-ի չափ սայլեր, մի քանի ֆուրգոն. Նրանց քայքայուած տնտեսու-

թիւնը վերականգնելու համար՝ գնուած էր 20 զոյգ լծկաններ, խոզեր, մտադրութիւն կար գնելու նաև ոչխարներ, երկուսին մի հատ ճանապարհի համար վերցուած էր պէտք եղած չափով հաց ու ալիւր և փող։ Տանձուտում այս տարի միայն ծխախոտի մշակութեամբ կարելի կը լինի զբաղուել. ժամանակին ցանքս չէ արուած։

Վերադարձի քարաւանը շատ ուրախ դուրս եկաւ քաղաքից. ուրախ էին, որ վերադառնում էին իրենց վաթանը. սակայն վաթանում, իրենց անթաղ հարազատների ոսկորները պիտի մոմռացնէ և վրէժ կանչի։ Գաղթականներին առաջնորդում էր յայտնի Վ. Մազմանեանը։

Բարի երթ... նոյնը կը ցանկանք մեր միւս գաղթական եղբայրներին։

—Այսօր հեռագիր ստացուեց, որ շուտով Խնուսից քաղաքս են գալու 100 որբ, որի համար Կ. Հ. Բ. Ը-թեան տեղիս ճիւղը ստացաւ 2000 ռ. որբերի համար բնակարան վարձելու, կահաւորելու և այլ անմիջական պէտքերը հոգալու։ Յիշեալ ճիւղի նախագահ՝ պ. Վ. Շահպարոնեանը, ինչպէս տանձոտցիների համար, նոյնպէս այժմ ամբողջ հոգով աշխատում է ամեն ինչ լաւ սարքելու և ընդունելու որբերին։

Վանիկ

*
* *

ԱԽԱԼՑԽԱ, 9 յունիսի.—Ամսիս 6-ին տեղս հասան Թրքահայ 100 որբ, որոնց քաղաքիս Որբախնամ մասնախումբը ժամանակաւորապէս տեղաւորեց հայոց Եղիսաբեթեան օրիորդաց դպրոցում։ Որբերի համար պատրաստուած են առանձին նոր անկողիններ, կահաւորութիւններ, ևայլն հարկաւոր իրեղէններ։ Մասնախումբը շնորհիւ տեղիս Հայ-Կանանց Բար. ընկ. ևայլ ձեռընհաս տիկինների, օրիորդների ու պարոնների ժրաջան աշխատութեան և աջակցութեան, համարեա 5—6 օրուայ ընթացքում կարողացաւ պատրաստել տալ այդ իրերը և կանոնաւոր կերպով Որբանոցի կահաւորութիւնը գլուխ բերել։ Որբանոցի համար հրաւիրուած են ռոճկով ծառայողներ։ Երկու վարժուհի, տ. Ան. Մանդինեանը և օր. Եպր. Թէխմիշճեանը ձրիաբար յանձն առան Որբանոցի կառավարչուհու պաշտօնը և եռանդուն կերպով մինչև հիմա տանում են այդ։ Հասարակութիւնը շատ սրտագին է վերաբերւում թիւրքբռնութեան այս զոհերին և որոշ նուէրներով ու աշխատութիւններով աջակցում Որբանոցին։ Նորաւարտ տեղացի բժիշկ Մ. Վանցեանը ձրի յանձն առաւ որբերի բժշկութեան պաշտօնը. դրանց մի մասի մէջ տարածուած էր բոր հիւանդութիւնը։

—Դերասան Սևումեանը այստեղ է և իւր կնոջ՝ Լիւսի Սևումեանի ու տեղական թատերասէրների մասնակցութեամբ ամսիս 11-ին տալիս է մի ներկայացում։ Խաղալու են «Մարկ-Տւէնի» մի գործ. կոմեդիան, «Ինչպէս դարձաւ նա խմբագիր» և «Հէքիաթ»-ը հեղ. Մանուէլեանի։

—Վերջին օրերս սկսեցին մեզանում զգալի շոգեր և անձրևների տեղալը դադարեց։

Թ.

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Եղբ. Աֆրիկեանների Առևտրական Տունը, իր վաճառատան 30-ամեակի առիթով արել է հետևեալ նուիրաբերութիւնները—1. 6000 ռ. Երևանի Գայիանեան դպրոցին. 2. 6000—նոյն քաղաքի Մարիամեան դպրոցին. 3. Սուլտա գիւղի դպրոցական շէնքի շինութեան—320 ռ. 4. Օշականում՝ նոյն նպատակին—1000 ռ.։ Բացի այդ, այս երկու դպրոցներին խոստացել է տարեկան 500 ռ. 5. Կովկասի Հնագիտ. ընկերութեան՝ Անու պեղումների համար 10 տարի շարունակ, տարեկան 1000 ռ. 6. Երևանում հայ դերասանական խումբ պահելու համար—1500 ռ.։ Այլև դրամական նպաստներ՝ Թիֆլիսի այն շրջաններում դպրոցներ բանալու, ուր ապրում են՝ իրենց մայրենի լեզուին անտեղեակ հայեր։

* *
*

Գ. Տիգրան Աֆրիկեանը, որ տարեկան 6000 ռ. նպաստ է տալիս Կ. Հ. Բ. Ընկերութեանը իւր անունով դպրոցներ պահպանելու համար, մի գրութեամբ յայտնում է Խորհրդին, թէ բացի նախկին դպրոցներից, առաջիկայ սեպտեմբերից 300 ռուբլի նպաստ է նշանակում նաև Քութայիսի նահանգի Ջխարի ծխ. դպրոցին։

Խորհուրդը ի նկատի ունենալով պ. Տ. Աֆրիկեանի այդպիսի սրտագին վերաբերմունքը կրթական գործին, յայտնել է իւր շնորհակալութիւնը։

*
* *

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է Թէոդոսիայի Հայկական Կոմիտէից յօգուտ որբանոցների 300 ռ.։

*
* *

Գ. Ստեփան Յովհաննիսեան և Սաթենիկ Բաբայեան Գօղոսեաններից ի յիշատակ առաջնի աներոջ և երկրորդի հօր՝ Թիֆլիսում վախճանուած հանգուցեալ Բաբաջան Փօլադեանի, պսակի փոխարէն, յօգուտ գաղթականների 25 ռ.։

*
* *

Գ. Աւան-Իւզբաշեանից ի յիշատակ իւր որդի Գուրգէն Իւզբաշեանի յօգուտ ճաշարանի 200 ռ.։

*
* *

Կ. Հ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Ռոստովի ռուս վաճառական Նիկոլայ Տիմոֆէյևիչ Կուզաշից Թիֆլիսում իւր ձեռնարկութեան բաժանմունք բանալու առթիւ 1000 ռ. յօգուտ հայ որբերի։

### ՃԻՒՂԵՐ

Կ. Հ. Բ. Ը-թեան «Մարգակերտ»-ի Վարչութիւնը յայտնում է իւր խորին շնորհակալութիւնը Մարգակերտի հասարակութեանը, որ նուիրել է ճիւղին ութ հարիւր պուդ ցորեն. այլև Շուշուայ Ռէալական դպրոցի սան Խաչատուր Բադունցին նրա նուիրած տասն հինգ հատ հանրամատչելի գրքերի համար։

*
* *

Դ ե ր բ ե ն դ ի ճիւղից—Կանանց Կոմիտէի ձեռնարկած ժողովրդական զբօսանքից գոյացել է արդիւնք 1300 ռ., որից 1100 ռուբլին յատկացուած է գաղթականներին և 200 ռ. պ. Տ. Նազարեանի որբանոցին։

*
* *

Մ ա ր գ ա կ ե ր տ.—Մարգակերտ գիւղի հասարակութիւնը 15-ն յունիսի տարոյս համախօսական վճռով յանձնել է ի սեփականութիւն Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի գիւղի շտեմարանը 800 պուդ ցորենով, գնահատելով այն մօտ 1000 ռ.։ Այդ շտեմարանը Ընկ. ճիւղը պէտք է պահպանէ չքաւոր դասին օգնելու համար, Վարչութեան կարգադրութեամբ տարէնը մի անգամ հաշիւ տալով հասարակութեանը։

*
* *

Ս ո չ ի.—Մայիսի 26-ին կայացաւ ընդհանուր ժողով 35 անդամի ներկայութեամբ։ Ժողովում քննուեց և վաւերացուեց Վարչութեան ելևմտի հաշիւները։ Վարչութեան անդամներ ընտրուեցին.—Արամ Յակոբեան, Վաղարշակ Մինասեան, Ստովմ Քալանթարեան, Յակոբ Բէշարեան և Փիլիպոս Մինասեան 19 ձայնով։

*
* *

### ՀԵՌԱԳՐԵՐ

#### Հ ա յ կ. Կ ե ն տ. Կ ո մ ի տ է ի ն

ԱՐԴԱՀԱՆ—Մինասեանից.—Հրդեհի մանրամասնութիւնները կը յայտնեմ նամակով. արդէն անմիջական օգնութիւն հասցրել ենք. իսկ այժմ շարունակում ենք լրացնել պակասը։

* *
*

X—Գ ա մ ա ր ե ա ն ի ց.—Ալէքսանդրապոլ ուղարկեցինք 98 որբ Խնուսի վրայով, որբանոցում մնում են դեռ 58 հոգի, Մուշում 40 հոգի։ Հետզհետէ որբերի թիւը աւելանում է։

*ԷՋՄԻԱԾԻՆ*—Գարեգին վարդապետից.—Գարաղջանեանցը հաղորդում է, որ Ղարաքիլիսում հաւաքուած են մեծ քանակութեամբ մշեցիներ, որոնք շատ անմխիթար դրութեան մէջ են. կարիքը մեծ է. այդ մասին Ձեզ հաղորդուած է, ի՞նչ միջոցների էք դիմել, խնդրում եմ անմիջապէս հաղորդեցէք։

* * *

*ՂԱՐՍԻՑ*—Զամոեանից.—Անընդհատ, ամենայն օր գալիս են նոր ու նոր գաղթականներ Մուշի շրջանից։ Նրանց դրութիւնը ուղղակի ողբալի է. կարիքը մեծ է։ Տեղիս Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը հնարաւորութիւն չունի օգնութիւն հասցնելու։

Խնդրում ենք օգնութեան հասնել։

* * *

*ՂԱՐՍ*—Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի վարչութիւնից.—Գաղթականների ճգնաժամն է. գալիս են օրական 50—100 նոր ու նոր գաղթականներ։

Միջոցներ չունենալու պատճառով նոքա մնում են բախտի կամքին։

# Ամենայն Հայոց Կաթողիկոսը Թիֆլիսում

## ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԺԱՄԱՆՈՒՄԸ։

Կիրակի, յունիսի 26-ին, առաւօտեան ժամը 10-ին Թիֆլիս ժամանեց Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսը։ Ժամը 9-ից արդէն կայարան սկսեցին ժողովուել դիմաւորողները—բոլոր հաստատութիւնների ներկայացուցիչները և հայ ազգաբնակութեան կողմից պատգամաւորներ։ Ժամը 10-ին հասան Փոխարքայի օգնականներ՝ գեն. Եանուշկեւիչ և Օրլով, Կովկասեան զինուորական շրջանի գլխաւոր կառավարիչ գեն. լէյտ. Վոլսկիյ, փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեն. Թամամշեան, Թիֆլիսի նահանգապետ Մանդրիկա, և ուրիշ շատ բարձրաստիճան անձեր, ի թիւս որոց և Թիֆլիսի քաղաքագլուխը՝ վարչութեան անդամների հետ, ապա և Անգլիացի միսիոներներ՝ վերապատ. Բէքստօն, Ստիպէլտօն՝ իրենց ամուսինների հետ, և այլն և այլն։

Ժամը $10\frac{1}{2}$-ին կայարան հասաւ յատուկ գնացքը կաթողիկոսական սալոն-վագոնով։ Վեհ. Կաթողիկոսի երեւալը ողջունուեց բուռն կեցցէներով։

Առաջին ողջոյնի խօսքն արտասանեց Փոխարքայի օգնական գեն. Եանուշկեւիչը։ Այնուհետեւ ողջունելու մօտեցան միւս բարձրաստիճան անձերը, իսկ ազգաբնակութեան կողմից Վեհափառին ողջունեց քաղաքագլուխ Խատիսեանը։

Անցնելով արքայական դահլիճը, Վեհ. Կաթողիկոսին ողջունեց Բար. Ընկ. Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը՝ հետեւեալ խօսքերով. «Վեհափառ Տէր, ազգի ընտրեալ Հայրապետ։ Թիֆլիսի հայ ժողովրդի բոլոր խաւերը և ազգ. հաստատութիւնների ներկայացուցիչները, խոնարհեցնելով իրենց գլուխը Ձերդ Ս. Օծութեան առաջ, անկեղծ որդիական սիրով ողջունում են Ձեր բարի գալուստը։ Մենք զգացուած և երախտապարտ ենք, որ Ձերդ Վեհափառութիւնը, չը նայելով այս ամառային տօթ օրերին, անտես անելով ճանապարհորդութեան դժուարութիւնները և նեղութիւնները, բարեհաճեց այցելել իր սիրեցեալ և Ձեզ սիրող հօտին։ Միայն այն ջերմ սէրը, որ դուք ունէք դէպի Ձեր հօտը, մանաւանդ այն անթիւ հոգսերն ու ցաւերը, որ շնորհիւ կատաղուող արիւնահեղ պատերազմի ծանրացել են Ձեր վրայ՝ թիւրքահայերի վիճակի մասին, կարող էին դրդել Ձեզ՝ կատարել այս ուղեւորութիւնը։ Մեր յոյսը և հաւատը տակաւին զօրեղ է և անխախտ, որ Մեծն Ռուսաստանի և նրա դաշնակից պետութիւնների բարձր հաւանութիւնը և պաշտպանութիւնը կը տան հայ ազգին արժանաւոր հատուցումն նրա կրած անասելի զոհաբերութիւնների փոխարէն և Ամենայն Հայոց Կաթողիկոսն էլ կը մխիթարուի և իր կաթողիկոսութեան ժամանակ կը տեսնի իր ազգի լաւ օրերը։ Կրկին ողջոյն Ձեզ, Վեհափառ Տէր, և յաջողութիւն Ձեր առաքելութեան։ Կեցցէ Ամենայն Հայոց Կաթողիկոսը»։

Նորին Վեհափառութիւնը շնորհակալութիւն յայտնելով, խոստացաւ պատասխանել Վանքի եկեղեցում։ Արքայական դահլիճից ելնելիս, կայարանի առաջ նորից թնդաց բուռն «կեցցէն»։ Ն. Վեհափառութիւնը ժողովրդին օրհնելուց յետոյ, նստեց վեցձի բաց կառքը և շքախմբով ու մեծ հանդէսով մտաւ քաղաք։ Կառքի առջեւից գնում էին ոստիկանապետը, երկու խաչակիր և գաւազանակիր ձիաւոր քահանաներ։ Ետեւից ընթանում էին հարիւրաւոր ինքնաշարժներ և կառքեր՝ լի դիմաւորողներով։

Ալէքսանդրեան այգու մօտ Վեհափառը մտաւ ամպհովանու տակ, որի ձողերը բռնել էին ուսուցչապետ Վարդանեան, բժշկ. Նաւասարդեան, Մ. Դոլուխանեան և Ա. Խատիսեան։ Համքարական բազմաթիւ դրօշակների, ժողովրդի անընդհատ «կեցցէների», եկեղեցական «Հրաշափառ Աստուած» շարականի երգեցողութեամբ՝ Վեհափառը խուռն բազմութեան ուղեկցութեամբ առաջնորդուեց հանդիսով Վանքի եկեղեցին։

Այստեղ Վեհին ողջունեց «Մշակի» խմբագիր Հ. Առաքելեան, որից յետոյ Վեհափառը գնաց քիչ հանգստանալու, ապա և նորից եկեղեցի իջաւ և խօսեց իրեն սպասող ժողովրդին։ Վեհափառը նախ շնորհակալ եղաւ ազգի կողմից արտայայտած բարի գալստի և ցոյց տուած սիրոյ համար։ Այնուհետեւ ասաց.—«Շնորհիւ մեր կառավարութեան մարդասիրութեան և առատաձեռնութեան, շնորհիւ ազգի զանազան դասակարգերի ցոյց տուած սրբտալիր ու գիտակից օժանդակութեան մենք պատուով դիմանում ենք մեր ծանր դժբաղդութիւններին։ Բայց ես պէտք է աւելացնեմ այստեղ, որ մեր տանջուած ու հալածական եղբայրներին աւելի լաւ և իրական օգնութեան է հասնում մեր գիւղացութիւնը, որ իր հացը կիսում է թշուառների հետ...»։ Այնուհետեւ Վեհափառը սրտի կսկիծով կանգ առաւ Հայաստանում տեղի ունեցած աղէտի վրայ և յորդորեց, որ պէտք է թողնել այլեւս կուսակցական անձնական ու դասակարգային հաշիւները մի կողմ ու միանալ՝ վերականգնելու համար Մեծն Հայաստանի քայքայուած տնտեսութիւնը։—«Ես հաւատացած եմ, վերջացրեց Վեհափառը, որ իմ խօսքերը իբր բարի սերմ, կընկնեն բեղմնաւոր հողի վրայ և լաւ արդիւնք կը տան»։

Մաղթանքը վերջացնելուց յետոյ, Վեհափառը մտաւ վեհարան, ուր սպասում էին նրան ներկայանալ ցանկացող անձեր։

Այդ նոյն օրը Վեհ. Կաթողիկոսը ժամը 5-ին այցելեց Ն. Կ. Մ. Փոխարքային, որ և իր կողմից ժամը 6-ին այցելեց Վեհ. Կաթողիկոսին,

Այնուհետեւ Վեհափառը այցելեց Վրաց էկզարխին, որն փոխադարձ այցելութիւնը տուաւ։ Այդ օրը ներկայացան Վեհափառին՝ հրէաների ռաբունապետ Մարկուս, ապա և ուրիշ պաշտօնական անձեր։

—

Յունիսի 29-ին Վեհափափառին ներկայացան Թիֆլիսի ազգային-կուլտուրական հաստատութիւնների ներկայացուցիչները, որոնց կողմից խօսք ուղղեց Հ. Առաքելեանը։ Վեհափառը դարձեալ շեշտեց համերաշխ գործունէութեան վրայ և յորդորեց թողնել նեղ կուսակցական հաշիւները։

# Քրոնիկոն

Անցեալ շաբաթ Եւրոպայից գալով դէպի Պարսկաստան մեկնեց Նասրէդդին շահի որդին, արքայազն Զիլլի սուլթանը։ Իր հօր մահուանից յետոյ իշխանը, որ ակնկալութիւն ունէր նրա գահին, անյաջողութեան հանդիպելուց յետոյ՝ Պարսկական յեղափոխու-

*թեան ժամանակ անցաւ Եւրոպա և ահա այժմ նորից վերադառնում է իր կուսակալութեան տակ եղած նահանգը՝ Սպահան, ուր նա յարգուած էր և ունէր մեծ ազդեցութիւն։*

† Ա Ւ Օ

*Խորին վշտով հաղորդում ենք—Անդրանիկի ընկեր ԱՒՕԻ մահը։ Այս՝ դեռ երիտասարդ ռազմիկ—յեղափոխականը ուղեկցել է Անդրանիկին, Սեպուհին, Մուրադին միշտ հաւատարմութեամբ և հերոսական քաջութեամբ։ Աւօն Գիւմրիշխանցի էր և մեռաւ Բաթումում, ծանր հիւանդութիւնից յետոյ։ Աւօյի դիակը փոխադրուեց Թիֆլիս երէկ և նրա յուղարկաւորութիւնը տեղի կունենայ այսօր, Վանքի Մայր եկեղեցում։ Աւօն կը թաղուի Խոջիվանքի գերեզմանատանը։*

* * *

*Թիֆլիս է եկել Պետրոգրադից՝ ուսուցիչ Վ. Վարդանեանը, որ իբր լիազօր Տատեանեան յանձնաժողովի, պաշտօն ունի յիշեալ յանձնաժողովից նպաստ ստացող հիմնարկութիւնների մէջ քննութիւն կատարելու։ Թիֆլիսից ուսուցչապետն ուղեւորուելու է Տաճկահայաստան։*

* * *

*Ժամանել է Թիֆլիս Տոմսկի համալսարանի ուսուցչապ. Սապոժնիկովը, որ Ալաշկերտ պիտի գնայ՝ այնտեղի բուսականութիւնը ուսումնասիրելու։ Ուղեկցում են Տոմսկի թանգարանապետ Շիշկինը և Թիֆլիսի բուսաբանական պարտէզի հողագէտ Տիւրեմնովը։*

* * *

*Սոլոլակի Տունէլի բացումը տեղի ունեցաւ ամսիս 29-ին, ցերեկուայ ժամը 2-ին։ Ներկայ էին պաշտօնական անձեր և այլ և այլ հաստատութիւնների ներկայացուցիչներ։ Տունէլի բերանը գտնւում է Բէհբութեան փողոցի № 30 տան բակում, իսկ միւս ծայրը հանում է Բուսաբան. պարտէզի ձորամէջը։ Անցքը ձրի է, բայց Բուսաբան. պարտէզը մտնելու համար միւս կողմից՝ պիտի վճարել 5 կոպ.։*

* * *

*Լրագիրները հաղորդում են, որ շուտով Ռուսաստանում կօշիկների և կաշուէղէնի գները սաստիկ կընկնեն, որովհետև մեծ քանակութեամբ կօշիկներ են սպասւում Ամերիկայից։*

* * *

*Լոնդոն են մեկնում վեր. Բըկստոն և Խոցկենտ և տանում են իրենց հետ շատ հարուստ նիւթեր հայ թշուառութիւնների՝ ներկայացնելու Լոնդոնի հայանպաստ յանձնաժողովին։*

* * *

*Այսօրուանից փակուելու է նկարիչ Գ. Բաշինջաղեանի ցուցահանդէսը։ Ցուցադրութիւնից մինչև օրս վաճառուել է մօտ քսան նկար։*

* * *

*Թոքախտի դէմ կռուող Կովկասի Ընկերութեան վարչութիւնը աչքի առաջ ունենալով, որ Աբասթումանում բնակարանները շատ թանգ են, որոշել է նոր շինուող սանատորիայում սենեակներ պատրաստել և չունեւոր հիւանդներին տալ ձրի։ Օգտուել ցանկացողները կարող են դիմել ընկերութեան Աբասթումանի բաժանմունքին։*

# Արտաքին տեսութիւն

## ԱՐԱԲԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆԸ

*Արաբիան իւր 10—12 միլիոն ժողովրդով, որ թիւրք պետութեան ոյժն ու նեցուկն էր կազմում—այժմ ոտքի է ելել, ապստամբութեան դրօշն է պարզել Թիւրքիոյ դէմ և յայտարարել է, որ Օսմանեան պետութիւնը «Երիտասարդ թիւրքերի» վատթար կառավարութեան ներքոյ չի կարող համարուել այլևս իսլամ խալիֆայութեան ներկայացուցիչը։*

*Այս ծանրակշիռ և Թիւրքիոյ համար կործանարար յայտարարութիւնը գալիս է արար բազմաթիւ ցեղերի և Մէքքայի մեծ շէրիֆի կողմից։ Ու շէրիֆը ինքն է, իսլամական այդ իսկական պետը, որ անցել է ապստամբութեան գլուխը, Մէքքան մաքրել է թիւրքերից, կտրել է Օսմանեան լուծից և քայլում է դէպի Մէդինէ ու դէպի երջանիկ Արաբիոյ բոլոր մասերը արաբների ձեռքն անցնելու մտքով։*

*Տեղի է ունենում այն, ինչ դարերից ի վեր ձգտում էին արաբները և ինչ Օսմանեան սահմանադրութեան օրերում գրեթէ կիսովին ունեցել էին Արաբիայի անկախութեանը։*

*Սակայն այժմ, Օսմ. պետութեան վատթար կառավարութեան ու անմիտ քաղաքականութեան շնորհիւ, այլև տեղի ունեցող սոսկումների ազդեցութեան տակ Արաբիան այլևս վճռել է արաբական միութեանը հասնելով՝ ընդմիշտ ազատուել թիւրքական ճնշող լուծից։*

*Եգիպտոսից արդէն ստացւում են նոր տեղեկութիւններ, որ ապստամբութիւնը մեծ չափեր է ընդունում ու սպառնում է ոչ միայն Արաբիան կտրել Թիւրքիայից, այլև Միջագետը, Սիրիան և Պաղեստինը զատել Փոքր Ասիայից։*

*Իրաւունք ունի թիւրքական «Ե ն ի Ի գ ր ա լ» թերթը, երբ այդ ապստամբութիւնը համարում է չափազանց ծանրակշիռ Թիւրքիոյ համար։*

*«Թիւրքիան տկար ոյժեր ունի Հիջազում, մինչ Հիջազի մեծ նաւահանգիստը—Ջէդդէն, գտնուելով անգլիացիների ձեռքում, հեշտութեամբ զէնք կը մատակարարուի ապստամբներին։... և անգլիացիները առիթը չեն փախցնիլ աջակցելու նոյն իսկ զօրքով ու հրահանգող սպաներով...*

*Ապստամբութիւնը, ուրեմն, կը լինի երկարատև, ծանրակշիռ և կարող է վերջնական հարուած ներկայանալ Օսմանեան պետութեան համար։*

* * *

*Ռուսիոյ և Ճապոնիայի դաշնագրութեան յօդուածներից պաշտօնապէս յայտարարուած են հետևեալները.—1. Ռուսիան չի մասնակցիլ որևէ համաձայնութեան և կամ քաղաքական պայմանի, որ ուղղուած կը լինի Ճապոնիայի դէմ։ Ճապոնիան նոյնպէս չը պիտի մասնակցի որևէ համաձայնութեան կամ քաղաքական պայմանի, որ ուղղուած կը լինի Ռուսիոյ դէմ։ 2. Եթէ Հեռաւոր-Արևելքում դաշնադիր կողմերից մէկի հողային իրաւունքների կամ առանձին այնպիսի շահերի դէմ սպառնալիք լինի, որոնք ճանաչուած են միւս դաշնակցողի կողմից—Ռուսիան կամ Ճապոնիան համաձայնութեան կը գան ձեռք առնուելիք միջոցների և իրար աջակցելու և իրենց իրաւունքներն ու շահերը պաշտպանելու համար։*

*Այս դաշնագրութեան տևողութիւնը նշանակուած է 10 տարի։*

* * *

*Չինաստանի նոր նախագահի մի հրովարտակով վերահաստատւում է չինական ա. տարուայ հասարակապետութեան ժամանակաւոր սահմանադրութիւնը։ Բոլոր այն փոփոխութիւնները, որոնք յետագայում մտցրին այդ սահմանադրութեան մէջ—այժմ ջնջւում են։ Այն դաշնագրութիւնները, որոնք կնքուել են, վերահաստատւում են նորից։ Պառլամենտի բացումը նշանակուած է յուլիսի 19-ին։ Նախագահն է լինելու նախկին նախարարապետ Դուանցիժույ։*

* * *

*«Ռ ո ւ ս կ. Վ է դ.» թերթին հեռագրում են Բուխարեստից, որ Ռումինիայի կառավարութիւնը, լուր ստանալով Կ. Պոլսում տիրող հնդախտի (խոլերայի) համաճարակի մասին, կարգադրել է Թիւրքիայից եկողներին ենթարկել ախտահանութեան։*

* * *

Հեռագրերը հաղորդում են Սամոս կղզուց, որ յունիսի 20-ին դաշնակիցների սաւառնակները ռմբակոծել են Զմիւռնիա քաղաքն ու իրա շրջակայքը և նետել են մօտ հարիւր ռումբից աւելի։

* * *

Պետրոգրադի ոստիկանութեանը հաղորդուած է աջակցութիւն ցոյց տալու, եթէ Նանսիից (Ֆրանսիա) Գերմանիոյ վրայով դէպի Ռուսիա թռչող Մարդանի սաւառնակը իջնի այնտեղ։

## Լ Ո Ւ Ր Ե Ր

Զմիւռնիայի վերջին ռմբակոծութեան ժամանակ այրուել է քրքերի երկու թաղ և սպանուել 2,500 մարդ։ Ոչնչացել են երկաթուղու կայարաններ և ռազմամթերքի մթերանոցներ։

—

Թիւրքական վայրենութիւնը արդէն սանձարձակութեան է հասել ամեն ուղղութեամբ։ «Պորտուգալ» հիւանդանոցային նաւը պայթեցնելուց յետոյ, այս օրերս այդ անազնիւ թշնամու սուզանաւը Սև ծովում, Ռիզէի մօտ, առանց նոյն իսկ նախազգուշացնելու, ընկղմեց մի երկրորդ հիւանդանոց-շոգենաւ «Впередъ» անունով։ Բարեբաղդաբար այս անգամ զոհերի թիւը քիչ է (միայն 7), բայց ոչնչացել են բոլոր նիւթերը։ Ժամանակին կարողացել են ազատուել մնացած 60 հոգին։ Շոգենաւը ընկղմել է 4-5 վայրկեանում։

—

Չերնոգորիայում ապստամբութիւն է ծագել աւստրիացիների դէմ։ Յուզումը մեծանում է հետզհետէ և համակում բոլոր մասերը։ Լրագրերը հաղորդում են, որ ապստամբութիւնը ծաւալւում է դէպի Սերբիա։ Աւստրիացիները նեղի են լծուած, որովհետև ազգաբնակութեան թշնամական շարժումները սպառնում են կատաղի դիմադրութիւն առաջ բերել ամեն ուղղութեամբ։

* * *

Հնդկաստանի մահմեդականները, ինչպէս հաղորդում են թերթերը, որոշել են Թիւրքիայից բաժանուել։

Մահմեդականների վեհաժողովը պաշտօնանկ է արել Պոլսի Շէյխ Իւլ-Իսլամին և վճռել է այդ պաշտօնը յանձնել ուրիշի Թիւրքիայից դուրս։

—

«Times» անգլիական թերթը տեղեկութիւն է ստացել, որ հին թիւրքերը դաւադրութիւն են սարքել ոչնչացնելու երիտասարդ թիւրքերին բոլոր քաղաքներում և այդ պատճառով գերմանացիները շտապով աւստրիական նոր զօրաբաժիններ են ուղարկում Թիւրքիա։ Իսկիւտարի բարձունքներին նոր թնդանօթներ են դրել։

—

Դաշնակից պետութիւնները յայտնել են Ռումանիոյ կառավարութեան, որ եթէ Ռումինիան իր նոր հունձքի արդիւնքը ծախի գերմանացիներին—այդ կը համարուի թշնամական գործողութիւն դաշնակիցների դէմ։

—

Բաղէլից հեռագրում են, որ Բօսնօ-Հերցեգովինեան թիւրք երիտասարդ ուսանողները Զուիցարական լրագիրներում կոչ են հրատարակել, որով նրանք համակրութիւն են յայտնում ապստամբուող արաբներին և դատապարտում են երիտասարդ թիւրքերի ռէժիմը։

## ՍԻՐԻԱՑԻՆԵՐԻ ԿՈՏՈՐԱԾԸ

Մենք միմիայն հայոց կոտորածներն ու սարսափները գիտենք և այդ սոսկումների մանրամասնութիւններն ունենք։ Մեզնում իսկ կան մտածողներ, գուցէ և պնդողներ, որ եթէ հայերը «խոհեմ» գտնուէին—գուցէ նրանց չը կոտորէին, տեղահան չանէին, սովի չը մատնէին։ Կան, որ «անխոհեմ շարժումներն» ու «դաւաճան մտածութիւնները» առաջադրում են որպէս գլխաւոր պատճառ՝ տեղի ունեցող գազանութիւնների։

Թող այդպէս ենթադրենք պահ մի։ Մոռանանք «երիտասարդ թիւրքերի» վաղուցուայ ծրագիրն ու վաղօրօք սահմանած մտածութիւնները—«Թիւրքիան միմիայն իսլամներին», «միմիայն թիւրքերին»։ Մոռանանք որ սիստեմաթիք կերպով առաջ տարուող նրանց այդ քաղաքականութիւնը երևան գալ սկսեց այն օրերից իսկ, երբ հայերը դեռ ոչ միայն «խոհեմ» էին, այլ «դաւաճան մտածութիւններ» ու «անխոհեմ շարժումներ» երազել անգամ չէին կարող։

Բայց մի՞թէ սիրիացի քրիստոնեաներն էլ «անխոհեմ» եղան ու «դաւաճանական մտածութիւններ» ունեցան, որ թիւրքական վայրենի ու արիւնարբու կառավարութիւնը, մինչև այս մայիսի 1-ը այնտեղ ոչնչացրել է 80,000-ից աւելի ազգաբնակութիւն։

Ահա թէ ինչ է գրում սիրիացի և ֆրանսական յայտնի գրագէտ Շէքրի-Գանէմը «Մ ա տ է ն» թերթում.—

. . . «Ջէմալ փաշայի հրամանով— այդ իբր թէ միակ մարդասէր «երիտասարդ թիւրքերից»—ողջ ողջ վառել է տուել կանանց, մանուկների ու ծերունիների, խմբովին տեղահանել է և հազարաւորներին անօթութիւնից մեռցրել...։ Գիւղեր ու ճանապարհները ծածկուած են դիակներով. ամբողջ Լիբանանը մատնել է սովի...»

Այնուհետև այդ թատերագիր բանաստեղծը, լի արդարացի մի զայրոյթով, դառնացած իր հայրենիքի այդ անգութ աւերածութիւնից—գոչում է.

—«Բայց թող չը մոռանայ Թիւրքը, որ սիրիացին աչք փակել չի կարող այդ ամենի առաջ։ Լէտան (մոռացութեան գետը) Սիրիոյ մէջ չի հոսում... և այդ լրջօրէն կապացուցանի սիրիացին...»։

Սիրիացիները արդեօք ինչ էին «արել», որ Ջէմալը՝ այդ իբր թէ «գերմանատեաց» մարդասէր Թիւրքը 80,000 կոտորել տալով չի ուզում ետ մնալ իր բարեկամ էնւէրից ու Թալէաթից։ Սիրիացիներն էլ «խոհեմ» չը գտնուեցին, սիրիացիներն էլ «դաւաճան» հանդիսացան։

Շէքրի Գանէմը իր բուռն զայրոյթի արտայայտութիւնը դրել է մի ուրիշ կոչի մէջ ևս, որով նա դիմում է դաշնակից և չէզոք պետութիւններին «Գ ա հ ի ր է ի Թ ե ր թ» լրագրի մէջ և պահանջում է միջամտութիւն։ Թիւրքերը, ինչպէս ասուած է այդ նոր կոչի մէջ, ապրիլ ամսի ընթացքում միայն Լիբանանի երևելիներից սպանել են 54 անձ և 5 սիրիացի արքեպիսկոպոս աքսորել իբր կողմնակից դաշնակիցների...

Կարո՞ղ ենք արդեօք զարմանալ, եթէ լսենք, որ «երիտասարդ թիւրքերը» իրենց զէնքը պիտի դարձնեն, գուցէ շատ մօտերս— դէպի միւս քրիստոնեայ ցեղերը Թիւրքիայում։ Նրանց քաղաքականութեան հիմնական կէտն է այդ և որևէ «խոհեմութիւն» կամ «հպատակային հաւատարմութիւններ» չեն կարող կասեցնել նրանց՝ իրենց որոշումներից։

Վ. Փ.

## Տ Ա Ճ Կ Ա Հ Ա Յ Ե Ր

### ԱՐԱԲ ՇԷՅԽԵՐՈՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆԸ ՄԻՋԱԳԵՏՔԻ ՀԱՅՈՑ ՏԱՌԱՊԱՆՔԻ ՄԱՍԻՆ

(Նամակ Միջագետքէն)

. . . , 26 յունուար 1916

Ար . . . .

. . . . . . . . . . . . . . . . . .

Սրտի մորմոքով կը տեղեկագրենք ձեզի այս կողմերու հայոց սոսկալի կացութեան մասին հետևեալ աչքառու խնդիր-

ները։ Կ՚ըգրենք ձեզի իբրև քրիստոնեայ քաղաքակրթութեան ներկայացուցչի մը, և իբրև Թիւրքիոյ մէջ գտնուող քրիստոնեայ համայնքին վրայ թեւարկու կառավարութեանց լիազօրի մը։

Անցնող 20 օրերու ընթացքին տեղի ունեցած յաջորդական կարգ մը գաղանական արշաւանքները հայ ժողովուրդը, թուով մօտ 20,000, լեցուած են անապատին մէջ։ Ստոյգ է թէ օրապահիկի համար ուտելիք կը գտնուի հոս, բայց չափազանց սուղ ըլլալուն՝ ժողովուրդը գրեթէ անսուաղ կը մնայ։ Անապատին մէջ գտնուած տարագիրներուն 3000-ը մնած են ուտեստի նուազութեան պատճառաւ, և եթէ այս սոսկալի կացութիւնը շարունակուի, շատերը տակաւին պիտի փճանան։ Մօտ 868 անձինք անլուր կացութեան մը մատնուած են։

Որպէսզի կարենանք որոշ գաղափար մը տալ ձեզի տեղւոյս մէջ տիրող կացութեան մասին, պիտի թուենք հետևեալ սրտախոշոշ դէպքերը, որ մեզի համար սովորական երևոյթներ դարձած են։ Բանի մը առաջնակարգ ընտանիքներ, անկարող պահելու իրենց զաւակները, յաջորդաբար ծախեցին զանոնք արաբներուն, 20—40 դահեկանի։ Իսկ քանիները, յուսահատութեան մատնուած, ձգեցին իրենց սրտի հատորները գետերու մէջ։

Սովամահներու թիւը, իւրաքանչիւր օր, 30-ի կը հասնի։ Ասկէ զատ՝ մեռած դիակները հոս ու հոն ձգուած են անթաղ, և համաճարակները ծայր տուած են ժողովրդեան մէջ։

Դեռ աւելին կայ. կեանքի և ինչքի ապահովութիւն չկայ հոս. հոս ու հոն քշուող տարագիրներու շարքերը թէ ցամաքի և թէ գետի վրայ կը կեղեքուեն և կը կողոպտուին յելուզակներէ, իրենց ընկերակցող կառավարական ոստիկաններու ներկայութեան։

Կիներու և աղջիկներու, մանուկներու և ծերերու թշուառութիւնը, և իրենց զաւակներուն օգնելու անկարող դարձած ծնողներու յուսահատութիւնը մինչև իսկ արաբ ճամբորդներու սիրտն ալ շարժած է և յաճախ այս անիրաւութեանց դէմ բողոքի մղած զիրենք։ Անոնք, կենդանի վկաներ այս արարքներու, աւելի սահմռկեցուցիչ պատմութիւններ կը պատմեն մեզի արցունքոտ աչքերով։ Մինչև անգամ հոս ամեն գիշեր յարձակումի ենթակայ ենք։

. . . Կը տարակուսինք թէ անոնք պիտի կրնան ապրիլ այս կացութեան մէջ. օգնեցէք անոնց, եթէ ոչ անոնք կորսուած են. ի սէր քրիստոնէութեան, ի սէր ձեր ազնուութեան և առաքինութեան և ի սէր մարդկութեան, որ քաղաքակիրթ աշխարհը միացուցած է, օգնեցէք անոնց։

Պատմութիւնը պիտի արձանագրէ ձեր անունը ոսկի տառերով և հայ ազգը պիտի գիտնայ փոխարինել ձեզի իր երախտագիտութեան մեծարանքը երբ ազատ օրեր գան։

. . . Մենք կը հաստատենք վերոյիշեալ գրութիւններուն ճշմարտութիւնը, և կը ստորագրենք իբրև շէյխեր . . . նահանգի և . . . գետահովտի։

Շէյխ . . . ի
Շէյխ . . . ի
Շէյխ . . . ի

Փոխ-հրամանատար ոստիկան զօրաց....ի
(Արձագանգ Պարիզի, թիւ 5)։

***

Մուշի կողմերից Մուրադն ու Սեպուհը հեռագրում են.—

Մի հայի կեանքը փրկւում է մի օսմանեան ոսկիով։ Կոչ ենք անում նրանց, որոնց սրտին մօտ են հայ ժողովրդի մնացորդները, որ չը խնայեն մի-մի ոսկի և փրկեն գերի մնացած 4-5 հազար թշուառներին։ Նուիրատուները կարող են իրենց նուէրները ուղարկել «Ազգային Բիւրոյին»։

Մի օսմանեան ոսկին 18 ռուբլի է։

***

## ՀԱՅԱՆՊԱՍ ՇԱՐԺՈՒՄ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՈՒՄ.

Լոնդոնի Լորդ-Մէյրի ֆոնդը մի նոր կոչով հրաւիրում է նպաստել հայ ժողովրդի վերաշինութեան գործին. յորդորում է ամէն բրիտանացու՝ օգնել փախստականներին, որպէս զի սերմացու, եզ, գործիք և ուտելու պաշար ճարեն և կարողանան սպառնացող սովի առաջը առնել։ Հաւաքուող գումարները կը բաշխուեն Բրիտանացոց Յանձնաժողովի ձեռքով, որ Հայաստան է ուղարկել վեր. Հարոլդ Բըկստոնին։ Կոչը հրաւէր է կարդում Անգլիայում հրաւիրել բոլոր քաղաքապետութիւններին՝ նպաստի ֆոնդեր կազմակերպելու և փող հաւաքելու։ Յունիսի 7-ին գումարուել է մի մեծ միտինգ քաղաքապետարանի մէջ Լոնդոնում։ Նախագահել է ինքը Լորդ-Մէյրը և բացատրել է միտինգի նպատակը։ Խօսել են նաև լորդ Բրայս, լէդի Ռամզէյ, և այն պարլամենտականը—Մարք Սայքս—որ քննադատել է հայերին։ Այդ հայերին «թշնամի» անձը խօսել է ոգևորուած, յայտարարելով թէ իւրաքանչիւր անգլիացու պարտաւորութիւնն է օգնել մնացող հայերին՝ վերապրելու և իրենց կեանքը ապահովելու։

Մայիսի 18-ին Նիւ-Եօրքի մէջ տեղի է ունեցել մի հսկայական միտինգ հայ կարօտեալների նպաստի համար և հաւաքուել է 35,000 դոլար։ Նախագահել է Քլիվլէնդ Դոդ. ոգևորուած խօսել է Պոլսի նախկին դեսպան Մորգընթօ, որ իր պաշտօնից հրաժարուել է, որպէս զի Ամերիկայի զանազան կողմերը ման գայ, նկարագրի հայկական ցաւերը և խոշոր գումարներ հանգանակի։

Ամերիկայի քրիստոնէական դաշնակցութիւնը մի կոչով դիմել է բոլոր եկեղեցիներին, որպէս զի մայիս 28-ի կիրակի օրը պատերազմների զոհերի համար հանգանակութիւն անեն։ Կոչի մէջ առանձնապէս շեշտուած է հայկական աղէտը և ասուած, որ միայն Ամերիկայի նպաստը կարող է հայ ցեղը անհետացումից ազատել և մօտ 800,000 կարօտեալներին կերակրել։

Հայանպաստ յօդուածներ են տպւում բոլոր թերթերի մէջ։

***

«Կավկ. Սլովօ» թերթին Պետրոգրադից հեռագրում են, որ ռուս և հայ գործիչները կառավարչական շրջաններում հարց են բարձրացրել ազատելու այն 2000 թիւրքահպատակ գերի զինուորներին, որոնք տեղաւորուած են Սիբիրում։ Միջնորդութիւնը յաջողութիւն է գտել և գերիները շուտով կազատուեն։

---

# Գ ե ղ ա ր ո ւ ե ս տ

---

## ՀԱՅ ԱԶԳԻՆ

(ՄԱՐԻԷՏՏԱ ՇԱՀԻՆԵԱՆԻ)

Ապաստան ունի երկնքի թռչուն,
Եւ խլուրդն ու որդ՝ իրանց որջ ու բուն.—
Դարերից ի վեր խե՜ղճ. անօթևան,
Դո՛ւ ես միայնակ, ազգ իմ աննման։

Զուգեցին երբէք որդիքդ յոգնած
Պողպատեայ սուրի փայլը բոցասլաց,
Ո՛չ բարձունքները հպարտ լեռների
Ո՛չ խրախճանքը առատ աւարի,—
Այլ խաղաղութիւն՝ յարկում ընտանի,
Եւ ծանր աշխատանք՝ դաշտում հայրենի...

Արիւն քրտինքով դու ոռոգեցիր
Յուլիսեան արտեր՝ անխո՜նջ անձանձիր...
Հովուական սրինգն հնչեց քեզ համար
Խաղող «ի՜ա» վայրի ու «ուհն» վշտահար...

Ու մաքիներդ քնքոյշ թաւամազ,
Տւին իրենց բուրդ՝ խոնարհ հանապազ,
Որ հայուհիները անշուք խրճիթում
Մանեն, աշխատեն ձմեռն անդադրում...

Բայց, աւա՜ղ. նորից արտերդ ամայի,
Օջախդ աւեր՝ ձեռքով թշնամի...
Եւ քո գիւղերում գայլն է գիշակեր
Ոռնում յագեցած, ցերեկ ու գիշեր...

Դու անօթևան՝ Մարդու Որդու պէս,
Դու անզէն. անսուր՝ յաւէտ ողջակէզ—
Օտար երկնի տակ յարկ ես որոնում,
Որ յոգնած գլուխդ դնես անտրտում...

Օ՜, տանջուած իմ ազգ, քո անվերջ ուղին
Դէպի Գողգոթա՛ է տանում կրկին...
«Երանի՜ նրանց»—բայց ասել է Նա—
«Որ հալածուած են այս երկրի վրայ...

Թարգմ. Երուանդ Տէր-Գրիգորեան

# ՊԱՏԵՐԱԶՄ

Թովիչ դաշտերն ամայացան,
Արեան ծովերում.
Անուշ երգերն ու ծիծաղն—
Վառօդն է մարում...

Անգին կեանքերը որքա՜ն,
Ընկան անգերեզման...
Քանիսնե՜րը գնացին—չեկան
Երազի՜ նման...

Նիկ. Բեալաչեան

# Գիտական-գրական

## ՀԱՅԵՐԷՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ *)

(Վերջ).

7. Անդամը կամ բարդ ոտքը մեր ոտանաւորի կազմութեան մէջ մեծ դեր է խաղում. որովհետև մեր ոտանաւորների մէջ, սակաւ բացառութեամբ, իրար յաջորդում են կանոնաւորապէս կամ միայն բարդ ոտքեր (4+4... 5+5... 6+5), կամ բարդ ոտքեր միացած պարզ ոտքերի հետ (4+3. 4+4+3 և այլն։ Այսպիսի կազմութեամբ ոտանաւորի մէջ ռիթմի առաջխաղացութիւնը լինում է բնականօրէն թէ առանձին տակտերով և թէ անդամներով. տակտերից միայն առաջացած ռիթմը թերի է, քանի որ բազմավանկ բառերի անշեշտ վանկը կարող է միշտ տաղաչափօրէն շեշտուած վանկի տեղ անցնել։ Տակտերի, այսինքն պարզ ոտքերի այս թերին է ահա լրանում անդամներով. որովհետև մենք ոտանաւորի մէջ լսում ենք ոչ միայն առանձին պարզ ոտքերի, այլ և անդամների ռիթմը. կամ գոնէ որտեղ պակասում է տակտը, այնտեղ անդամի ռիթմն ենք լսում։

Ի բիւր ձայնից / բնութեան շքեղ
Թէ երգք թռչին / սիրոդարար,
Մատուռք կուսին / ամենագեղ
Թէ որ գարնան / փափուկ քնար,
Ձուլին մի ձայն / այնքան սիրուն
Բան զանձկալի / եղբայր անուն։

Պէշիկթաշլեան

Այստեղ առաջին, չորրորդ և հինգերորդ տողերի մէջ կան չորս յամբեր, որոնց ռիթմը մենք լսում ենք, բայց միաժամանակ դրանք երկերկու միացած են, և մենք արտասանում ենք ամեն չորս վանկն իբրև մի բարձրագոյն ռիթմական միութիւն։ Միւս տողերի մէջ պակասում է, երկրորդ և երրորդ տողերում, երրորդ ռիթմական շեշտը, իսկ վեցերորդ տողի մէջ առաջին ռիթմական շեշտը։ Հետևաբար, այդ տողերն ռիթմիկ երաժշտական տեսակէտից թերի են։ Բայց այդ ռիթմական թերին հենց փոխարինւում է անդամի ռիթմով. որովհետև այդ տողերի մէջ ևս ամեն չորս վանկը միասին կազմում են մի բարձրագոյն ռիթմական միութիւն։ Որտեղ նոյն պարզ ոտքերի կանոնաւոր յաջորդութիւն է լինում և ռիթմական շեշտի պակաս չկայ, ինչպէս վերևի առաջին, չորրորդ և հինգերորդ տողերի մէջ է, այնտեղ անդամի ռիթմն այնքան էլ կարևոր չէ. որովհետև կայ պարզ ոտքերի ռիթմը։ Բայց որտեղ պակասում է ռիթմական շեշտը, կամ տարբեր ոտքեր են յաջորդում իրար, այն էլ շարժուն դրութեամբ (2+3 կամ 3+2), այնտեղ անհրաժեշտ է անդամի ռիթմը։ Այդ պատճառով անշեշտ վանկն իբրև տաղաչափօրէն շեշտուած կարելի չէ դնել այն ոտքի մէջ, որ անդամի հիմնական զօրեղ շեշտն ունի. ինչպէս վերևի երկրորդ և երրորդ տողերը կարելի չէ յօրինել՝

Թէ երգք սիրո/դարար թռչին.
Մատուռք ամե/նագեղ կուսին.

Այսպիսի յօրինուածքի մէջ թէպէտ մնում են նոյն թւով ռիթմական շեշտերը և դարձեալ զոյգ վանկերի վրայ, ինչպէս պահանջում է յամբական ռիթմը. բայց վերանում է անդամը, և ոտանաւորը դառնում լոկ տակտաւոր, միայն մի տակտի մէջ անշեշտ վանկն իբրև շեշտաւոր գործածուած, ինչպէս ռուսերէն ոտանաւորի մէջ է լինում։ Դրանով պակասում է և ոտանաւորի ռիթմիկ երաժշտականութիւնը, քանի որ չկայ այլ ևս անդամի ռիթմը։ Ահա թէ ինչու մեր անդամաւոր ոտանաւորների ամենից էական կանոնն է, որ պէտք է անպայման շեշտուած լինի այն վանկը, որով վերջանում է անդամը, և ամեն բառի վերջի յարաշեշտ վանկը (տու՛նը քաղ/ցըր և այլն) պէտք է անցնի յաջորդ վանկին։

Թէ մեր լեզուի ինչ յատկութիւնների պատճառով այս անդամաւոր կազմութիւնը իւրացրել է մեր ոտանաւորը գրաբարում, որից նոյնն անցել է և աշխարհաբարին, այդ մի կողմ թողնելով՝ տեսնենք, թէ ինչ տեղ է բռնում մեր ոտանաւորը շեշտական տաղաչափութեան մէջ։

8. Հայերէն ոտանաւորը համարում են «վանկական», իբրև ռոմանական ոտանաւորի տեսակին պատկանող։ Այսպէս կոչուել է ֆրանսերէն ու իտալերէն ոտանաւորը նրա համար, որ իբր թէ տողերի մէջ նկատի է առնւում միայն վանկերի հաւասար թիւը։ Բայց այդ տեսութիւնը գերմանացի ռոմանագէտ բանասէրներից վաղուց դէն է ձգուած իբրև մի սխալ բան. ֆրանսերէն և իտալերէն ոտանաւորները նոյնպէս հիմնուած են շեշտերի վրայ, ինչպէս և գերմաներէնն ու ռուսերէնը։ Միայն ֆրանսերէնում և իտալերէնում նկատի չի առնւում տողի մէջ եղած բոլոր շեշտերի կանոնաւոր յաջորդութիւնը, այլ նրանցից երկուսինը միայն, իսկ կարճ տողերի մէջ միայն մէկինը։ Այսպէս ֆրանսերէնի Ալեքսանդրեան կոչուած չափի մէջ,—ինչպէս կոչւում է 12-վանկանի ոտանաւորը, որ ամենից սիրուածն է և շատ գործածուած,—անպայման շեշտուած պիտի լինին, առանց որևէ բացառութեան, 6-րդ և 12-րդ վանկերը. իսկ միւս շեշտերի դասաւորութիւնն ազատ և շարժուն է։ Ամենափոքր ռիթմական միութիւնն է ուրեմն ոչ թէ տակտը (պարզ ոտքը), այլ կիսատողը կամ անդամն իր

*) Տես «Համբաւաբեր» № 25։

սխալ հայեացքը, թէ մեր տաղաչափը «վանկական» է։ Բայց դժբախտաբար այդ «վանկական» ասածն էլ սխալ է հասկացուել և հասկացւում. որովհետև մինչդեռ «վանկական» կոչուած տաղաչափերի մէջ ամենախիստ ճշտութեամբ պահւում են ռիթմական շեշտերը,—մեզնում սովորաբար կարծում են, թէ «վանկական» տաղաչափը լոկ վանկեր է համարում առանց շեշտերի վրայ ուշադրութիւն դարձնելու։ Այս սխալ հասկացողութիւնը 19-րդ դարու երկրորդ կէսից մի ճակատագրական ազդեցութիւն է ունեցել և դեռ ունի մեր տաղաչափի վրայ. մեր բանաստեղծները յաճախ յօրինել են և յօրինում են ոչ թէ տ ա ղ ա չ ա փ, այլ լոկ վ ա ն կ ա չ ա փ։ Մեր 11-վանկանի տաղաչափն, օրինակ,—որ սովորաբար ունի 4+4+3=(2+2)+(2+2)+3 ձևը, անպայման շեշտ ունենալով 4. 8 և 11-րդ վանկերի վրայ, իսկ մնացած շեշտերը 2 և 6-րդ վանկերի վրայ,—մեր բանաստեղծութիւնների մէջ շատ անգամ կանոնաւոր ռիթմական շարժում չունի. քանի որ բանաստեղծները ոչ թէ պարզ կամ բարդ ռիթմական ոտքերն են նկատի ունենում, այլ միայն հաշւում են երկու հատ 4 և մի հատ 3 վանկեր, և որտեղ չորս վանկի հետ մի հատ առանձին գրուող բառ լրացու, այնտեղ լրացած են համարում և անդամը. ինչպէս են Գամառ Քաթիպայի հետևեալ տողերը.

Հեռացել եմ / իմ մայրենի / աշխարհից,
Սերտ բարեկամք / անջատած են / ինձանից.
Թառամում եմ / ես այս օտար / երկրումը,
Մենակ բուսած / վարդի նըման / դաշտումը։

Այս տողերի մէջ բնական շեշտերը, չհաշուած երկրորդականները, գրւում են հետևեալ վանկերի վրայ. ա) 3. 8. 11. բ) 4. 7. 11. գ) 3. 8. 10. դ) 4. 8. 10։ Ոչ մի տողի շեշտերն ուրեմն չեն բռնում միւս տողերի շեշտերին. հետևաբար և ոչ մի երաժշտական ռիթմ չկայ այդ գրուածքի մէջ։ Մինչդեռ Պէշիկթաշլեանի հետևեալ տողերը, որ դարձեալ նոյն չափով են յօրինուած, շատ ռիթմիկ են, որովհետև կանոնաւորապէս պահուած են ռիթմական շեշտերը,

Ոչ փող գարկինք / ոչ արձագանգ / լեռնաւոյդ
Սարէ ի սար / չարձագանգէ / թարին լուր.
Ու չերգեցինք / սըրնգ երգեր / սըրտայոյզ,
Երբ պատանւոյն / բացինք մըռայլ / փոսին դուռ։

Մ. Աբեղեան

---

ՄԱՍՊԵՐՈՅԻ ՄԱՀԸ

Պարիզում վախճանուել է յայտնի եգիպտաբան Գաստօն Մասպերօ, որ գրեթէ մինչև իր մահը շարունակում էր իր հետախուզութիւնները և պեղումները Եգիպտոսում։ Նշանաւոր գիտնականը մեռաւ 70 տարեկան հասակում։ Նորա բազմաթիւ գիտական երկերից յայտնի է, կարևոր և հայոց պատմութեան համար եղած Արևելեան ազգերի հին պատմութիւնը, որից կայ և համառօտը, մի ստուար հատոր։

ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

Ստացուել են հետևեալ գրքերը.—

1. **Գէորգ Տէր-Դանիէլեան. «Փուշ ալպարհ», «Աշխարհասուեղ».**
2) René Pinou „La Supprdssion des arméniers". 3) La revce des„ Amitiés franco—etrangéres—Hommage á l'Arménie".

---

# Մատենախօսութիւն

G. Doumergue. «L' Arménie, les massacres et la Question d' Orient
(«Հայաստանը, կոտորածները և Արևելեան Հարցը»)

—

Ֆրանսերէն մի ստուար հատոր է այս, որի մեծ մասը կազմում է շատ հետաքրքրական վկայաթղթեր և տեղեկութիւններ։

Այսպէս, իրար կցուած կան հետևեալ խնդիրների կարևոր լուսաբանութիւնները. 1) «Ա ր և ե լ ք ը ո ր պ է ս պ ա տ ճ ա ռ պ ա տ ե ր ա զ մ ի». 2) Թ ի ւ ր ք ե ր ը (ժողովրդն ու կառավարութիւնը). հալածանքները որպէս կառավարչական սիստեմ, Թիւրքերը և բուլգարները, Թիւրքերը և գերմանականութիւնը)։ 3) Հ ա յ ե ր ը (քաղաքական աշխարհագրութիւն) Մեծ Հայք, Փոքր Հայք և Կիլիկիա. վաճառականութիւն և արդիւնագործութիւն, կրթական գործը, վարք ու բարքը, հայոց գրականութիւնը, Գրիգոր Լուսաւորիչ և Քրիստոնէութիւն. Հայ եկեղեցին. 4) Ս. Ս տ է ֆ ա ն ո յ ի և Բ ե ռ լ ի ն ի դ ա շ ն ա գ ր ո ւ թ ի ւ ն ն ե ր ը, բ ա ր ե ն ո ր ո գ ո ւ թ ի ւ ն ն ե ր. 5) Ա բ դ ո ւ լ-Հ ա մ ի դ ն ու ի ր գ ո ր ծ ե ր ը. կոտորածներ և գերմանական պաստէորներ՝ Նաումանն ու Շնէլլէրը։ 6) Ե ր ի տ ա ս ա ր դ Թ ի ւ ր ք ե ր ը և հ ա յ ո ց կ ո տ ո ր ա ծ ն ե ր ը։ 7) Կ ո տ ո ր ա ծ ն ե ր ն ու Գ ե ր մ ա ն ի ա ն. 8) Գ ե ր մ ա ն ա կ ա ն ե ր ե ք ս ո ւ տ. 9) Կ ո տ ո ր ա ծ ն ե ր ը և Ֆ ր ա ն ս ի ա ն. 10) Հ ա յ ա ս տ ա ն ի ա պ ա գ ա ն. 11) Կ ո չ։

Այս բոլոր հատուածները ոչ միայն կարդացւում են մեծ հետաքրքրութեամբ, այլ և բովանդակում են յաճախ նոր լուսաբանութիւններ այս և այն խնդրի վերաբերութեամբ, երևան են բերում շատ, մինչև այժմ մեզ անյայտ պարզաբանութիւններ և ջերմագին պաշտպանութիւն են ու արդարացւում այն բոլոր սուտ ամբաստանութիւնների դէմ, որոնցով վերջերս ճգնում էին կոտորածները արդարացնել գերմանական և Թիւրք կառավարութիւնները։

Հետաքրքրական են մանաւանդ գերմանացի երկու պաստորի, «Աստուծոյ այդ պաշտօնեաների» խմստակ պաշտպանութիւնը Թիւրքական գաժան բարբարոսութիւնների։ Պաստոր Նաումանը, օրինակ, որ պատերազմից անմիջապէս առաջ ոչ միայն ձևանում էր հայասէր, այլ և պաշտպան էր կանգնում հայասիրական մի հրատարակութեան, այժմ գտնում է, որ հայոց կոտորածները անհրաժեշտութիւններ են և որ «հայերը՝ Արևելքի գերմանացիների համար ամենավատ տեսակի սառնակներ են»... որ «կոտորածները զուտ ներքին (Թիւրքական) քաղաքականութեան հարց է միայն», որ «կրօնը նը պիտի հերքէ կայսեր քաղաքականութիւնը» և որ «Գերմանիան կ ա ր ո ղ է պ ա ր ծ ե ն ա լ, որ չի միջամտել Արևելքում ճնշումների ենթարկուող որևէ ազգի պաշտպանութեան գործում»...

Գիրքը լի է այդպիսի վաւերագրերով և մեծ յաջողութեամբ հերքում է այն բոլոր արդարացումները, որոնք սովորաբար իրենց լեզուի ծայրին են ունենում բոլոր բռնակալները և գազանաբարոյ կառավարութիւնները։

Գրքի շքեղ, ոգևորութեամբ գրուած երեսներն են կազմում սակայն պ. Դումէրգի բուն դասախօսութիւնը (տեղի ունեցած Պարիզում, 1916, յունուար 16-ին) և մանաւանդ այնքան ջերմ, այնքան սրտալիր զգացմունքներով լի «Հ ա յ ա ս տ ա ն ի ա պ ա գ ա ն» վերնագրով երեք էջ։

Գրքի կողերը կրում են՝ հայ նկարիչ Շիշմանեանի մի սիրուն, զուտ հայկական զարդանկարը (երեսի վրայ), այլև Սևանայ վանքի տեսարանը (ետևի երեսում)։ Գրքի երեսի վրայ վերտառութիւններն անգամ, թէև ֆրանսերէն՝ նկարուած են Մեսրոպեան տառերի ձևով։

Վ. Փափազեան

---

# Մամուլ

Մայրաքաղաքի թերթերի ընթերցողները երևի իմացած կը լինեն, թէ ինչպէս Մոսկուայում մի ֆրանսացի ուսուցիչ Շերրօ անունով, տրամվայի վագոնի մէջ, ինչ-որ Թիւրիմացութեան

պատճառով յանձնում է ռուս ոստիկանի և այս ոստիկանը հայ է համարում նրան ու «արմեաշկա» տիտղոսից բացի, շռայլում է նաև մի շարք ծաղր ու ծանակ նրա հասցէին: Այդ մասին խօսելով «Բիրժ. Վէդոմ.» թերթը իր կողմից աւելացնում է.

«Անշուշտ շատ դուրեկան է, երբ մեզ մօտ ոստիկանութիւնը զուարթ է, երգիծանքով լի: Բայց օտարականին, այն էլ մեզ բարեկամ ֆրանսացուն, այդ երգիծանքը վատ ազդեց: Ուրիշ մթնոլորտի մարդ էր պ. Շիրօն և չը ծիծաղեց, երբ նրան սկսեց ձեռք առնել ոստիկանը և ծիծաղել «արմեաշկայի» գլխին թափուող քմծիծաղ կատակները լսելով: Ընդհակառակն, պ. Շիրօն նեղացաւ, գանգատուեց ֆրանսացոց հիւպատոսին, սա էլ քաղաքապետին: Այժմ խիստ քննութիւն է նշանակուած»:

«Անմեղ և կենսուրախ ոստիկանը հեռացուել է զարմացած. Աւա՜ղ ինչու համար. չէ՞ որ նա պ. Շիրօյին հայ էր կարծել: Եթէ գիտենար որ ֆրանսացի է—սիրտ քէֆին կը դպչէր. ուրիշ բան է, եթէ հայ է կամ, աւելի՝ հրեայ. ինչու ձեռք չանեմ»:

Այնուհետև թերթը մի այսպիսի խրատ է տալիս, որ արժանի է յատուկ ուշադրութեան.

«Ռուսաստան գալու ժամանակ՝ հայ մի լինէք և ջանացէք չը նմանուել նրանց, որովհետև Ռուսիայում ոստիկանները կարող են «վիրաւորել» հային, ձեռք առնել առանց որևէ պատճառի, պարզապէս ըստ ռուսական վաղեմի սովորութեան և ռուս-քաղաքական աստիճանաւորների կենսուրախ թելադրանքի»…

*
* *

«ԳՈԼՈՍ ԿԱՒԿԱԶԱ», «իսկական ռուսների» այդ թերթը իր ամենօրեայ կերակուրն է դարձրել անշուշտ հայերի հասցէին մի մի սլաք նետելը, թէկուզ անիրաւացի, հենց այնպէս. ճիշդ ռուս ոստիկանի կամ քաղաքական այն աստիճանաւորների մտայնութեամբ, որի զոհն է եղել «մի քիչ հայի նմանող» (երևի իր քթովը) ֆրանսացի պ. Շիրօն:

Յայտնի է, որ Եղբ. Աֆրիկեանները այս օրերս մի քանի հազար ռուբլի են նուիրաբերել հայոց հաստատութեանց:

«ԳՈԼ. ԿԱՒԿԱԶԱ»-ն այդ չի մարսում: Ինչպէ՜ս, հայ դպրոցներին նուէրնե՜ր տալ. միա՜յն հայ դպրոցներին, թէկուզ տուողը հայ իսկ լինէր.

…«Աֆրիկեանների վաճառատունը, պատերազմի սկզբում իր մթերանոցում պատրաստ ապրանք ունէր և երբ գները բարձրացան—աշխատեց մօտ 2 միլիոն: Պէտք է ենթադրել, որ այսպիսի բացառիկ վաստակը մի այսպիսի թշուառ օրերում պիտի Աֆրիկեանների սրտում գութ շարժէր դէպի ուրիշ ազգութեան թշուառներն էլ: Բայց հայը… ամենից առաջ հայ է…

«ԳՈԼ. ԿԱՒԿ.»-ին այդ զարմացնում է: Ինչպէ՜ս, հայը, ամենից առաջ հա՛յ լինի!…

Զարմանք, յիրաւի…:

*
* *

«Arménia» (Eco del e rivendicazioni armene) Torino.

«Հայաստան» (արձագանգ հայ ցանկութիւնների) Տուրին (Իտալիա):

Անցեալ հոկտեմբեր 15-ից Իտալիայում սկսել է լոյս տեսնել «Արմենիա» անունով իտալերէն մի ամսագիր, որ իր բովանդակալից և լաւ խմբագրուող համարներով արժանի է ամեն ուշադրութեան: Սկզբի համարներիցն իսկ յատուկ էջեր են նուիրուած հայ գրականութեան և բաւական աշխոյժ ու շահագրգիռ յօդուածներ թէ հայոց հարցի և թէ հայերի ներկայ դրութեան մասին: Այսպէս՝ շատ յաջող թարգմանութիւններ կատարուած են՝ Զօպանեանից, Դամառ Գաթիպայից, Զարդարեանից, Վարուժանից և այլն:

Թերթի խմբագրութիւնը յատկապէս հրաւիրում է հայ հեղինակներին՝ իրենց գրքերը ուղարկել՝ նրանց բովանդակութեան ծանօթացնելու համար իտալացիներին: Խնդրում է յատկապէս մանաւանդ պատմական, քաղաքական և գրական բնոյթ կրող գրուածքներից: Խմբագրութիւնը անհրաժեշտ պէտք ունի ուսումնասիրութիւնների:

Ամսագիրը պատկերազարդ է: Բաժնեգինն է, իւրաքանչիւր համարինը 25 սանտիմ: Ստացուած են մինչև այժմ 8 համար: Հասցէն Torino (Itaia) Corso Regina Margherita, № 73. Réd. «Armenia».

* *
*

«Արմեանսկի Վեստնիկ» Մոսկուայի շաբաթաթերթը հաղորդում է հետևեալը.

«Թիֆլիսում, ընդհանուր սպայակոյտի գեներալ-լէյտենանտ Պէշկովի նախագահութեամբ ժողովներ են տեղի ունենում Թիւրքաց-Հայաստանի գրաւուած մասերի կառավարչական ձևի մասին: Մտադրութիւն կայ Սև ծովից մինչև Վանայ լճի այդ մասը ենթարկել Կովկասի փոխարքայութեանը՝ յատուկ ընդհ. նահանգապետութեամբ, կենտրոնը Տրապիզոն: Ընդհ. նահանգապետի թեկնածու է համարւում Պոլսի ռուսաց դեսպանատան նախկին զինուորական կցորդը, որ Թիւրքիային և առ հասարակ Արևելքին լաւ ծանօթ անձ է ճանաչուած»:

## ՎՐԻՊԱԿ

«Համբաւաբեր»-ի № 24, Տարեգրի բաժնում Տուապսէից գրուած էր՝ ստացուած յօգուտ փախստականների 46 ռ., մինչդեռ այդ գումարը ստացուած է տեղի ճիւղի անդամավճար:

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Ն. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի   Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1.   Дозволено военной цен.

# „ՀԱՄԲԱՐՁՈՒՄ“-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Ալէքսանդրապոլի գաւառում գտնուող որբերի*

*Նոյեմբ. եւ դեկտ. 1915 թ.*

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող հայր կամ մայր | Ծնողների տեղը | Գրագէտ է | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| | *Դաւշան Ղշլաղ* | | | | | | |
| 461 | Բոնտօեան Ալեքսան | Ղարաղըզ | 15 | չունի | — | — | |
| 462 | » Տաճատ | » | 12 | » | — | — | |
| 463 | » Աղաւնի | » | 9 | » | — | — | |
| 464 | Կարապետեան Խանօ | » | 12 | » | — | — | |
| 465 | Խաչէեան Սինամ | Մերբար | 6 | » | — | — | |
| 466 | Յովակիմեան Սամսոն | Ղարաղըզ | 9 | » | — | — | |
| 467 | » Սերովբէ | » | 10 | » | — | — | |
| 468 | » Հայկ | » | 8 | » | — | — | |
| 469 | » Մարիամ | | | | | | |
| | *Զրփլի* | | | | | | |
| 470 | Գէորգեան Յովհան | Ղարաղըզ | 12 | չունի | — | — | |
| 471 | Գասպարեան Մայրիկ | » | 12 | » | — | — | |
| 472 | » Զայրօ | » | 8 | » | — | — | |
| 473 | Խուրշօեան Սեթ | Մէճիթլի | 6 | » | — | — | |
| 474 | » Պապիկ | » | 4 | » | — | — | |
| 475 | Մնէեան Հերքօ | » | 8 | » | — | — | |
| 476 | Մելքոնեան Սաղաթել | » | 10 | » | — | — | |
| 477 | » Սամուէլ | » | 8 | » | — | — | |
| 478 | » Բերսաբէ | » | 7 | » | — | — | |
| 479 | Փօղոսեան Ալմօ | Չէտկան | 3 | » | — | — | |
| 480 | » Հայկանոյշ | » | 2 | » | — | — | |
| | *Աղին* | | | | | | |
| 481 | Մուրադեան Հայկ | Թեղան | 12 | » | — | — | |
| 482 | » Բարիկ | » | 7 | » | — | — | |
| 483 | » Ազնիւ | » | 3 | » | — | — | |
| | *Բարբլի* | | | | | | |
| 484 | Մանուկեան Հայկ | Շիրվան շէյխ | 7 | չունի | — | — | |
| 485 | » Հրաչեայ | » | 5 | » | — | — | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 486 | Յարթինեան Սանամ | » | 2 | » | — | — |
| 487 | » Լեոն | Տօլադրաշ | 10 | » | — | — |
| | **Քեալաշի** | | | | | |
| 488 | Յարթինեան Չիչօ | Շիրվան շէյխ | 17 | չունի | — | — |
| 489 | » Ջանօ | » | 12 | » | — | — |
| | **Ղազարապատ** | | | | | |
| 490 | Մանուկեան Հըլաթ | Քեաբուլու | 7 | չունի | — | — |
| 491 | » Զօզօ | » | 9 | » | — | — |
| 492 | Մխօեան Նուշօ | » | 11 | » | — | — |
| 493 | » Նուարդ | » | 7 | » | — | — |

Վանի որբանոցից. մայիսի 1-ին, Դիլիջանի որբանոցները տեղափոխած. որբերը։

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ո՞րտեղացի է | Տարիքը | Ծնողներ ունի՞ թէ ոչ | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Ալի օղլի Աղա | Մոլլա Հասան | 6 | ունի | |
| 2 | Ասօ օղլի Ջամիշ | Սիպնա | 10 | » | |
| 3 | Աղօ գիզի Պօօ | չըգիտէ | 5 | » | |
| 4 | Աբրահամեան Շուշանիկ | » | 4 | չը գիտէ | |
| 5 | Աբրահամեան Շուշիկ | » | 4 | » | |
| 6 | Աւօեան Ագէթ | Բաղօխիզան | 5 | ունի | |
| 7 | Աբրոյեան Անդալաթ | Ցապօ | 5 | " | |
| 8 | Անթանազեան Սարգիս | Խարցան | 7 | " | |
| 9 | Աւետիսեան Զօջադա | Բէլման | 17 | " | |
| 10 | Ասօ օղլի Մահմուդ | Սիպնա | 7 | " | |
| 11 | Ասօ օղլի Իսմայիլ | » | 16 | " | |
| 12 | Աստուածատրեան Ենոք | Բիթլիս | 12 | " | |
| 13 | Աբէթեան Արմենուհի | » | 12 | " | |
| 14 | Աղաւնիկ Կարապ.-Յարութիւն. | Ջանախչի | 13 | — | |
| 15 | Արտակ » » | » | 11 | — | |
| 16 | Արտակ Աւետիս Մուշլեանց | Էրզրում | 13 | — | |
| 17 | Բարէյեան Մարօ | Խումա | 9 | ունի | |
| 18 | Գրիգորեան Վաղինակ | Բիթլիս | 7 | " | |
| 19 | Գէրէյեան Ազատուհի | Վան | 5 | " | |
| 20 | Գրիգորեան Վարդիթեր | Կարճկան | 5 | հայր | |
| 21 | Գրիգորեան Նազար | Բիթլիս | 8 | ունի | |
| 22 | Գէորգեան Օհան | Նորշէն | 15 | " | |
| 23 | Գրիգորեան Երուանդ | Գուլգա | 8 | » | |
| 24 | Գէորգեան Կարապետ | Պամօ | 7 | » | |
| 25 | Գրիգորեան Յարութիւն | Էրզրում | 12 | — | |
| 26 | Գիւլբայազ Աւետիս | » | 12 | — | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 27 | Դէրվիշ գիզի Գիւլիզար | Գորդէլի | 5 | ունի |
| 28 | Եղոյեան Մարգարիտ | Սօսէտ | 8 | ունի |
| 29 | Եսայեան Գալւարէլրէգ | Էրզրում | 13 | — |
| 30 | Զաքարեան Գարեգին | » | 12 | — |
| 31 | Թորոսեան Քաջբերուն | Հողերք | 8 | — |
| 32 | Ծաղօեան Գրիգոր | Բիթլիս | 7 | ունի |
| 33 | Կարոյեան Փարեշա | Շինա | 6 | » |
| 34 | Մուշեղեան Համբարձում | Դարունց | 3 | մայր |
| 35 | Մուշեղեան Եղիշէ | » | 6 | -- |
| 36 | Մեսրոպեան Վազգէն | Փորխանդ | 7 | ունի |
| 37 | Մեսրոպեան Բարկէն | » | 5 | — |
| 38 | Մեսրոպեան Պառուն | Վան | 4 | — |
| 39 | Մխիթարեան Եսթեր | Բիթլիս | 6 | ունի |
| 40 | Մինասեան Դաւիթ | Խարտա | 6 | » |
| 41 | Մուրադեան Փմրօ | Վան | 7 | » |
| 42 | Մանուկեան Բաղդասար | Ցիննա | 12 | " |
| 43 | Մինասեան Պարե | Բիթլիս | 10 | " |
| 44 | Մանուկեան Գէորգ | Գլոզա | 10 | հայր |
| 45 | Միլտոս | Էրզրում | 8 | — |
| 46 | Մուշեղ | — | 6 | — |
| 47 | Մալխասեան Հռիփսիմէ | » | 13 | — |
| 48 | Մկրտչեան Սուքիաս | » | 9 | — |
| 49 | Յովհաննիսեան Մուշեղ | Ցիննա | 8 | " |
| 50 | Յարութիւնեան Նեկտար | Շատախ | 5 | " |
| 51 | Յակոբեան Սաթենիկ | Էրզրում | 8 | » |
| 52 | Նազարեան Մուշեղ | Ոստան | 4 | հայր |
| 53 | Նշանեան Գիւլիզար | Ամենաշար | 5 | ունի |
| 54 | Պօղոսեան Մաքրուհի | Աւանց | 13 | ունի |
| 55 | Պօղանեան Սրբուհի | » | 6 | — |
| 56 | Պօղոսեան Արամ | » | 4 | " |
| 57 | Պետրոսեան Երանուհի | Զոչանի | 6 | » |
| 58 | Ռասուլ օղլի Շաքարի | Բիթլիս | 6 | " |
| 59 | Սերոբեան Աւագ | Դջանար | 8 | ունի |
| 60 | Սիմէօնեան Նոյեմզար | Բիթլիս | 8 | ունի |
| 61 | Ստեփանեան Արսէն | Ոստան | 8 | " |
| 62 | Սիրվարդ | — | 4 | — |
| 63 | Սարգսեան Վարդանոյշ | Շուշանակս | 6 | ունի |
| 64 | Սարգսեան Վարդան | Արտամէտ | 6 | » |
| 65 | Վարդանեան Ռեհան | Գլօկա | 12 | " |
| 66 | Տերտէրեան Վարդանոյշ | -- | 5 | — |
| 67 | Տէրտարեան Նուարդ | Էրզրում | 11 | — |
| 98 | Տէր Գալստեան Նոյեմզար | » | 12 | — |
| 69 | Օսման օղլի Զաքարի | Աւանց | 6 | ունի |
| 70 | Ֆնտխչեան Մովսէս | Էրզրում | 9 | — |
| 71 | Ֆնտխչեան Մարգարիտ | » | 7 | — |

## Ալաշկերտ բերուած նոր որբերի ցուցակը.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ո՞ր գիւղից | Ո՞ր շրջանից | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Անդրէասեան Վարդ | 9 | Իրեգկա | Մուշ | |
| 2 | Աւոյեան Հմայեակ | 6 | Հաւրնա | " | |
| 3 | Աւոյեան Մուշեղ | 12 | Խրթան | — | |
| 4 | Աւետիսեան Մուշեղ | 10 | Խրդիտ | — | |
| 5 | Աւետիսեան Ցնող | 6 | " | Խնուս | |
| 6 | Բդոյեան Ազատ | 7 | Բաշօն | — | |
| 7 | Բաղդասարեան Արմենակ | 3 | Հարամիդ | — | |
| 8 | Բաղդասարեան Եաշա | 3 | " | — | |
| 9 | Գարոյեան Ազատ | 7 | Խաշխուլու | Մուշ | |
| 10 | Եղոյեան Երուանդ | 11 | Քաղբիկ | — | |
| 11 | Թաթոսեան Անդրանիկ | 4 | Արօս | Խնուս | |
| 12 | Խաչատրեան Իֆտօ | , | — | — | |
| 13 | Խալաթեան Մելքօ | 10 | Իշադջլու | — | |
| 14 | Կրպօյեան Բայեազէ | 12 | Տապաւէն | Խլար | |
| 15 | Կարօյեան Վարդանոյշ | » | — | — | |
| 16 | Համբարձումեան Անդրէաս | 7 | Խնուս | Խնուս | |
| 17 | Մուշ·յեան Բերսօ | 5 | Փրկաշէն | Բլանուխ | |
| 18 | Մկրօյեան Դուրսու | 11 | Ալաֆուզաղ | Խնուս | |
| 19 | Մրդոյեան Վաղարշակ | 7 | Քրդագոմ | — | |
| 20 | Մուրադեան Մարգար | 7 | Ալիրգնա | — | |
| 21 | Մարգարեան Սարգիս | 6 | Փրկաշէն | — | |
| 22 | Մանուկեան Մխիթար | 3 | Համզաշէղ | — | |
| 23 | Մանուկեան Խուդրադ | 11 | » | — | |
| 24 | Մխիթարեան Հրանտ | 8 | Խրդիտ | Խնուս | |
| 25 | Մխիթարեան Հրաչ | 5 | — | " | |
| 26 | Մխոյեան Սուլթան | 7 | Բադնոց | — | |
| 27 | Յակոբեան Խորեն | 4 | Ղարաչօբան | — | |
| 28 | Յովհաննիսեան Արմենակ | 13 | Ղարաքօփրիկ | — | |
| 29 | Պետրոսեան Ռեհան | 8 | Իրեգկա | Մուշ | |
| 30 | Պետրոսեան Արուսեակ | 6 | — | — | |
| 31 | Պետրոսեան Հայկանոյշ | 5 | Ղարաքօփրիկ | Խնուս | |
| 32 | Սարգսեան Մարգար | 7 | Փրկաշէն | — | |
| 33 | Քալօյեան Աւագ | 11 | Բոստաքենդ | Մուշ | |
| 34 | Օհանեան Ռուբէն | 11 | Քօլօսկա | " | |